# «ԱՎՐՈՐԱ» ՆԱՎԸ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Կանգնած է հպարտ
«Ավրորա» նավը,
Բոլոր նավերից
Ամենալավը:
Իր Հոկտեմբերյան
Զարկերն է հիշում,
Խավարին հաղթած
Արկերն է հիշում:
Հին ամրոցների
Փլվելն է հիշում,
Մեր նոր աշխարհի
Ծնվելն է հիշում:
Փոթորիկ տեսած
Ծովերը բոլոր,
Առագաստ պարզած
Նավերը բոլոր
Ողջույն են հղում
Մեր խիզախ նավին՝
Բոլո՛ր նավերից
Ամենալավին:

Նկ. ՋԱՆԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ



# ԼՈՒՍԻԿ ԼԻՍԻՆՅԱՆ



1917 թվականի Հոկտեմբերյան փոթորկահույզ օրերին Մոսկվայում խորհրդային կարգերի հաստատման համար մարտնչողների շարքում էր երիտասարդ մի աղջիկ՝ Լուսիկ Լիսինյանը:

Նա ապրեց ընդամենը քսան տարի: Ծնվեց Թիֆլիսում, ավարտեց «Ուսուցչուհիների ընկերության դըպրոցը», «Օրիորդաց առաջին գիմնազիան»: 1914 թվականի ամռանը, երբ մոլեգնում էր Առաջին համաշխարհային պատերազմը և Թիֆլիսը հեղեղվել էր կարսեցի, էրզրումցի, արդահանցի գաղթականներով, որոնք ապաստան էին փնտրում եկեղեցիների պատերի տակ, երբ Կովկասյան ճակատից էշելոններով վիրավորներ էին բերում, Լուսիկ Լիսինյանը գթության քույր դարձավ: Նա ուզում էր օգնել վիրավորներին, որոնց խեղել էր պատերազմը:

1916 թվականին Լուսիկ Լիսինյանը մեկնեց Մոսկվա, մեկնեց գտնելու իր իսկական գործը: 1916 թ. աշնանը նա Առևտրական ինստիտուտի ուսանողուհի էր, Զամոսկվորեցկի բոլշևիկյան գաղտնի կազմակերպության անդամ, ինստիտուտի ուսանողների սոցիալ-դեմոկրատական (բոլշևիկյան) կազմակերպության ակտիվ գործիչներից մեկը: 19-ամյա փխրուն աղջիկը ինքնուրույն կուսակցական-քաղաքական աշխատանք էր կատարում՝ պրոպագանդիստ և կազմակերպիչ էր նշանակված Միխելսոնի անվան խոշոր գործարանում: Նա այդ գործարանի երիտասարդական բջջի հիմնադիրն էր և առաջին կոմերիտուհին: Քաղխմբակներ էր ղեկավարում «Բրոկար» և «Դանիլովսկի» ֆաբրիկաներում: Լուսիկ Լիսինյանը «III ինտերնացիոնալ» երիտասարդական միության ակտիվ կազմակերպիչներից մեկն էր, միություն, որը դարձավ կոմերիտմիության նախորդը:

Լարված աշխատանքի, հեղափոխության մրրիկների մեջ նա չէր կորցրել քնքշությունն ու նրբազգացությունը. «Ահա այս երկու օրը ես իմ ամբողջ էությամբ զգում եմ բնությունը: Ինձ թվում է, որ ես իմ էությամբ թափանցում եմ ամեն մի փոշեհատիկի մեջ, որ ես հասկանում եմ ամեն մի խոտի կյանքը և ինքս գիտեմ, որ ինձ անծանոթ և խորհրդավոր այնքա՜ն բան կա...»

Երբ ապստամբությունը սկսվեց, Լուսիկը մերթ շտաբում էր, մերթ դիրքերում՝ կարմիրգվարդիականների հետ: Նա հասցնում էր ռազմա-հեղափոխական կոմիտեի շտաբում զեկուցումներ կարդալ, կապել վիրավորների վերքերը, թշնամու գնդակների տարափի տակ տեղեկություններ տանել կենտրոն: Հանգստի սակավ րոպեներին նա նամակներ էր գրում, կարոտում էր հարազատներին, իրենց տունը, կարող էր նույնիսկ լաց լինել, իմանալով, որ սատկել է իրենց Տիգրիս շունը. «...Եվ գիտե՞ս, ես լաց եղա, որքան էլ որ դա ծիծաղելի լինի, երբ իմացա, որ Տիգրիսը սատկել է: Նրա հետ կորան իմ անմիտ մանկական օրերն ու մտքերը»:

Նոյեմբերի 1-ին ռազմա-հեղափոխական կոմիտեի շտաբում Լուսիկը հայտարարեց, որ գնում է Օստոժենկա: Դա այդ մարտերի ամենավտանգավոր տեղամասն էր: Թշնամին դարանակալել էր ամենուր: Մարտեր էին մղվում յուրաքանչյուր տան համար: Օստոժենկայում շտաբի առաջադրանքը կատարելիս, մարտիկների մի խմբից մյուսը անցնելու ժամանակ, թշնամու գնդակից հերոսաբար զոհվեց Լուսիկ Լիսինյանը: Իսկ նոյեմբերի 2-ին ընկան հակահեղափոխության վերջին հենարանները: Բանվորներն ու գյուղացիները ներխուժեցին Կրեմլ: Դա հաղթանակ էր, որին այնպես սպասում էր Լուսիկը:

Լուսիկ Լիսինյանին թաղեցին Կարմիր հրապարակում, Կրեմլի պատի տակ, հեղափոխության զոհված մարտիկների եղբայրական գերեզմանում:

ՖԵՆԻՔՍ ՍԱՐԳԱՐՅԱՆ



# ԾՈՎԵՐԻՑ ԲԱՐՁՐ,

ԱԼԲԵՐՏ ՇԱՀԱԶԻԶՅԱՆ

«Դարերի երկիր, քարերի երկիր, արևի երկիր Հայաստանս»։

Ինչ լա՛վ է ասել բանաստեղծը։ Այո, սա այն երկիրն է, այն ժողովուրդը, որը հազար-հազար տարիների ճանապարհ է անցել և ջահել է այնպե՜ս։ Այն երկիրը, որն անսպառ, տեսակ-տեսակ քարեր ունի, գանձեր պահած, պարիսպ դարձած սարեր ունի և անհատնում արև։

Ու պիտի խամրեր այդ արևը։ Պիտի գնային ձեռքից մեր սարերը, եթե ազատություն չբերեր մեզ Մեծ Հոկտեմբերը։ Մեզ մնաց կորստից փրկված մի փոքրիկ Հայաստան, ջարդից ու սովից փրկված մի բուռ ժողովուրդ, մեր հարազատ սարերն ու քարերը։

Փոքրիկ մի հանրապետություն՝ ծովերից բարձր, արևին մոտիկ։ Հայկական հինավուրց լեռնաշխարհի մի մասն է նա, տասն անգամ փոքր մի կտորը՝ ընկած մայր-Արաքսի միջին հովտի ձախ ափում։ Սովետական Միության հարավում է նա, Արագած ու Արարատ հպարտ լեռների հայացքի տակ։ Լեռների երկիր է Հայաստանը, անդնդախոր կիրճերի, գեղատեսիլ հովիտների ու ընդարձակ սարահարթերի երկիր։ Հյուսիսից ու հարավից, արևելքից ու արևմուտքից իրար խաչաձևելով, թիկունք-թիկունքի շուրջպար են բռնել Բազումի, Վիրահայոց, Գուգարաց, Զանգեզուրի, Վարդենիսի, Փամբակի, Արեգունու լեռնաշղթաները, որոնց սիգապանծ գագաթներին ձյուն է նստած։ Կովկասյան, Ալպյան, Հիմալայան հզոր լեռների հետ են գոյացել նրանք, կազմել հայոց բարձրիկ լեռնաշխարհը։ Եթե ինքնաթիռից նայեք ներքև, կտեսնեք, թե որքա՜ն բարդ ու բազմազան ձևեր ունի նրա մակերևույթը։

— Իսկ կլիմա՞ն,— կհարցնեք դուք։

Կլիման նույնպես բազմազան է ու տարբեր։ Մերձարևադարձային գոտու հյուսիսում է գտնվում Հայաստանը, չորային ու արևաշատ։ Այստեղ դուք կգտնեք Սովետական Միության համարյա բոլոր կլիմաների տիպերը՝ սկսած ցուրտ լեռնայինից մինչև մերձարևադարձայինը։ Էլ ինչպե՞ս նույն գարունը լինի ու ամառը, էլ ինչպե՞ս նույն աշունը լինի ու նույն ձմեռը։ Ղուկասյանում, երբ դեռ իսկական ձմեռ է ու բուք, Մեղրիում արդեն ծաղկում են նշենին ու սալորենին, բալենին ու խնձորենին։ Եվ ողջ հովիտը լցվում է ծաղիկների արբեցուցիչ բուրմունքով։ Սանդուղքի աստիճանների պես որքան վեր բարձրանանք, այնքան փոխվում է կլիման։

— Բայց որքա՞ն կարելի է բարձրանալ,— կհարցնեք դուք։ Առանց բարձրանալու էլ, Հայաստանի ամենացածր կետը ծովից 390 մետր բարձր է գտնվում։ Իսկ ամբողջ տերիտորիան՝ մոտ 2000 մետր։ Սանդուղքի վերին աստիճանը Արագած լեռն է՝ ավելի քան չորս կիլոմետր բարձրությամբ, ձյունե բաշը չորս գագաթներին...

Գարունն ու ամառը այդ աստիճաններով դանդաղ բարձրանում են դեպի լեռները, իսկ աշունն ու ձմեռը, ընդհակառակը, վերևից, լեռներից սահում են դեպի հովիտներն ու գոգավորությունները և այսպես, փոխեփոխ, ամբողջ տարին։

Շոգ ամառից հետո, զով ու փափուկ աշունը իր լիությամբ ու գույների կախարդական խաղով, իր բեղուն օրերի եռուզեռով, բերկրանքով է լցնում մարդկանց սրտերը։ Խաղաղ ու պայծառ օրերին, թվում է, թե կապույտ հրդեհով է բռնկվել հորիզոնը։ Արևը նման է վարսերը քանդած ուրախ մի աղջկա, նա առաջվա պես էլ չի այրում և մեղմ ու անուշիկ ժպիտներ, բարություն է թափում երկնքից։ Մի տեսակ թախիծով է լցվում մարդու սիրտը, մի տեսակ անորոշ կարոտով։ Լցվում է հոգիդ անհուն սիրով դեպի աշխարհը, դեպի կյանքը, դեպի մարդիկ, խոր հարգանքով ու երախտագիտությամբ՝ դեպի հողագործը, որի ձեռքերով է ստեղծվում այդ ծով լիությունը։ Չէ՞ որ այդպես հրապուրիչ, այդպես առատաձեռն չէր լինի աշունը, եթե մարդը չծաղկեցներ հողը, ծառ ու թուփ չտնկեր, այգի ու բանջարանոց չմշակեր։

Բերքի անուշ բուրմունքով են շնչում այգիներն ու դաշտերը։ Քաղցրանում է խաղողը, սկսվում են այգեկութի լուսեղեն օրերը։ Աշունը իր իրավունքների մեջ է մտնում դեռևս օգոստոսի առաջին տասնօրյակից։ Աշուն է ցուրտ՝ լեռնային, տունդրային գոտում՝ լեռնագագաթների սահմանագծում։ Ձյան բերանից, ուր ալպիական մանուշակն է բացվում, տարածվում են ալպյան հիանալի մարգագետինները։ Զանգակ աղբյուրների ու ծաղիկ-կանաչի մեջ ֆերմաների հոտերն են արածում։ Հյութալի ու առատ կերը միշտ չէ, որ անասունները հանգիստ են ուտում։ Օրվա մեջ քանի՛ անգամ անձրև ու կարկուտ է գալիս, ամպ ու որոտ է լինում։ Ամառն այստեղ զով է ու կարճատև։ Աշունը ցուրտ է, իսկ ձմեռը՝ երկար ու խստաշունչ։ Նույնիսկ ամառին այս կողմերում առանց վերարկուի չես երևա։ Սարերում էլ ոչ ոք չկա։ Արոտներից հոտն իջել է տուն։ Լռել է հովվի սրինգը սարերում։ Աշուն է, ուշ է, մշուշ է։

Իջնենք մի աստիճան, մտնենք բարեխառն-ցուրտ անտառային կլիմայի գոտին։ Այստեղ արդեն տանելի է, նույնիսկ հաճելի, երբ փախել ես այրող շոգից։ Բայց ի՞նչ շոգ։ Սեպտեմբերն այս գոտու աշնան ամիսն է։ Անտառներով հարուստ չէ Հայաստանը, տերիտորիայի ընդամենը 10 տոկոսը։ Հիմնական շերտը տարածված է մեր հանրապետության հյուսիս-արևելյան շրջաններում՝ Դիլիջանում, Կիրովականում, Ստեփանավանում, Թումանյանում, Շամշադինում, Նոյեմբերյանում, ինչպես նաև Զանգեզուրում։ Տեսե՞լ եք աշնանն անտառում. ի՞նչ գեղեցկություն,

# ԱՐԵՎԻՆ ՄՈՏԻԿ

ՆԿ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

ի՞նչ առատություն: Վայրի տանձ, խնձոր, ընկույզ, սալոր, հոն, մասուր, մոռ, զկեռ, մոշ և էլ ի՞նչ միրգ ու պտուղ ասես, որ չես գտնի այստեղ: Վայրի կենդանիների համար իսկական խրախճանքի օրեր են՝ ուտում են ու ձմեռվա համար էլ պաշար տեսնում: Անցնող օրերի հետ նոր գույներով, նոր երանգներով են զուգվում ծառերը. հսկա կաղնին ու բոխին, լորենին ու հաճարին, թղկին ու հացենին: Իսկ երբ անձրև է գալիս ու բարձրանում է քամին, հառաչում է անտառը տխրորեն և թռչող կայծերի նման իր գունազարդ տերևները տալիս քամու բերան, որոնք քշվում են չվող թռչունների պես: Անտառներից ներքև սարահարթերն են՝ կարտոֆիլի, ճակնդեղի և հացահատիկի արտերով: Բայց ամենից աչքի ընկնողը և ուրախալին, այս գոտում մրգի նորատունկ այգիներն են: Ցրտադիմացկուն, միչուրինյան տանձենին ու խնձորենին, տեսեք, թե ինչպես են բերք տվել Սևանի ավազանում: Գնացեք Սևան, Կամո, Մարտունի, Վարդենիս, տեսեք, թե մինչև ուր են հասել լեռնային գեղեցկուհիները: Այնտեղ, ուր երբեք պտղատու ծառ չի աճել, այսօր ձեզ կհյուրասիրեն ամենաընտիր տանձ ու խնձորով: Ախր, էլ ի՞նչ աշուն, առանց մրգի, առանց գունազարդվող ծառերի, առանց մեղմ ու քնքուշ տերևաթափի: Եթե կուզեք, աշնան առաջին նշանը ծառերի, թփերի և խաղողի վազերի տերևների գունազարդվելն է: Տեսե՞լ եք, թե ինչպիսի կախարդական գույներով են զուգվում Արարատյան դաշտի այգեստանները: Բայց սպասեք, ինչո՞ւ առաջ վազենք: Եկեք աշնան հետ մենք էլ առանց շտապելու գնանք նրա ետևից: Չէ՞ որ մի տեղ նա երկար չի մնում: Իրար հաջորդելով ինչպես սայլի չորս անիվներ, գլորվում են տարվա եղանակները, իրենց հետ առաջ շարժելով կյանքը, տարիները, դարերը: Ամեն մեկը իր կլիմայի սահմաններում, ամեն մեկը իր գոտու ճանապարհներով:

Ահա մենք բարեխառն-տաք, չոր կլիմայի գոտում ենք, մեր հանրապետության նախալեռնային շրջաններում՝ Աշտարակում, Թալինում, Աբովյանում, Եղեգնաձորում: Այստեղ արտերը վաղուց են հնձվել: Աշնանացանն էլ վերջացել է, այգեկութի եռուն օրերն են: Ջրով ծանրացած ամպերը սկսել են շուտ-շուտ կուտակվել, պատրաստվելով երկար ու մանրաշիթ անձրևների: Այգիներում ուրախ զրնգում են խաղողաքաղի երգերը: Խաղող, ի՞նչ խաղող: Գնացե՞ք Երևանից Աշտարակ տանող ճանապարհով: Տեսեք, թե ինչպես են մարդիկ խոպանը ծաղկեցրել: Հազարավոր հեկտար խաղողի ու պտղի նոր այգիներ են տնկվել այս վերջին տարիներին: Տասնյակ հազարավոր տոննա խաղող ու միրգ է տալիս երեկվա խոպանը: Ամենուրեք ջրանցքներ ու ջրհան կայաններ են կառուցվել: Նոյեմբերյանում, Աբովյանում, Աշտարակում, Թալինում, Եղեգնաձորում, Գորիսում... էլ որտեղ ասես, որ չի հասել հողի աշխատավորի ստեղծարար ձեռքը: Շուրջ 40 հազար հեկտար խաղողի և այդքան էլ պտղատու այգիներ ունի Հայաստանը: Էլ ո՞ւր ասես, որ չի հասել «Ոսկեհատի», «Արարատի», «Սաթենիի», «Նազելիի» և հայկական խաղողի մյուս տեսակների, արևահամ մրգերի՝ բալի ու կեռասի, ծիրանի ու դեղձի, տանձի ու խնձորի, թզի, նռան ու նշի համբավը:

«Աշտարակի խաղող ես, վազիդ մատաղ»:

Գիտե՞ք այդ երգը: Աշնան բարիքներից էլ ի՞նչ ասես, որ չեն պատրաստում: Մեր մայրիկներն ու քույրիկները ոսկեշող խաղողից ընտիր դոշաբ են եփում, սուջուխ, դեղձից՝ ալանի, ծիրանից՝ չիր պատրաստում: Ձմեռը այդ քաղցրավենիքին մատնափշատ և ընկույզ խառնեք, և ի՞նչ սեղաններ ասես, որ չեք զարդարի: Իսկ եթե խոսենք հայտնի հայկական կոնյակի և սեղանի գինիների՝ «Աշտարակի», «Օշականի», «Ոսկեվազի», «Մեղրաձորի» և մյուսների մասին, շատ հեռու կգնանք: Այդ խմիչքները միջազգային տոնավաճառներում ու ցուցահանդեսներում ոսկե շատ մեդալներ ու մրցանակներ են շահել:

Ահա և հռչակավոր Արարատյան դաշտը: Նա չոր ցամաքային կլիմայի գոտում է գտնվում: Հոկտեմբերի կեսերն է արդեն: Աշունը նոր է սկսվում այստեղ. Մրգերի բուրմունքով է շնչում ողջ հարթավայրը: Աշնանը Արաքսի այս ձախափնյա հովիտը նման է բերք ու բարիքով լեցուն մի հսկա սկուտեղի: Հայաստանի մրգերով լի ոսկե սինին է Արարատյան դաշտը: Հայաստանի «միջնաշխարհ» են անվանել այս բարեբեր հովիտը, ուր հին դարերում բարգավաճել և ապա կործանվել են մայրաքաղաքներ Արտաշատը, Դվինը, Արմավիրը, Վաղարշապատը... Ո՞վ գիտե, քանի՞ աշունների տերևներ են թափվել այդ քաղաքների փլատակների վրա, ո՞վ գիտե:

Արարատյան դաշտի մասին մեզանից 1500 տարի առաջ մեծ գովեստով է խոսել նշանավոր պատմիչ Ղազար Փարպեցին. նա իր «Հայոց պատմություն» գրքում ուղղակի գրել է.

«Արարատյան գավառը, որ հայոց աշխարհի գլուխն է, ամենալի գավառն է, որը առատության օրինակ է տալիս:

Արարատյա՛ն դաշտ... հոյակապ է և հռչակավոր, ամենաբույսն է, ամենալին: Նա հոգում է մարդկանց կարիքները: Դաշտը մեծատարած է, որսով առատ, շրջափակված գեղեցկանիստ լեռներով, որոնց կատարներից հոսող ջրերը ոռոգում և արբեցնում են հողը, և մարդիկ հացի ու գինու պակասություն չեն ունենում»:

Արարատյան դաշտի ոսկե աշուն...





# ՍԱՎԱՌՆԻ՛Ր ԱԶԱՏ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Հայաստա՛ն, երբ քո մասին եմ գրում,
Լցվում է տողս խաղողի հյութով,
Դո՛ւ՝ անուշ պտուղ քարե աշխարհում,
Դո՛ւ՝ քարից հառնած արմատ կենսաթով:

Դո՛ւ՝ Արագածի ծաղիկների բույր,
Եվ կապո՛ւյտ-կապույտ ալիք Սևանի,
Դո՛ւ՝ հերոսների անմահ հուշաղբյուր,
Եվ վարդե ժպիտ Նոր Երևանի:

Սահմանների մեջ քո փոքրիկ հողի
Մեծ Հայաստանի սիրտն է տրոփում,
Եվ վրան ամեն քո Նոր կոթողի
Մեր Հայրենիքի դրոշն է ծփում:

Ճախրանքի պատրաստ իմ ջահե՛լ արծիվ,
Քեզ պատվանդան են լեռները քո սեգ,
Սավառնի՛ր ազատ այս լուսաբացին
Դեպի գալիքի ափերը լուսե...





Բայց մենք դեռ լրիվ ճաշակած չենք լինի մեր հարազատ Հայաստանի աշնան քաղցրությունն ու լիությունը, եթե չիջնենք մերձարևադարձային գոտին, չգնանք գոգավորությունները, չմտնենք Աղստև, Տավուշ գետերի հովիտները, չգնանք Շամշադինի, Իջևանի, Նոյեմբերյանի այգիները, չանցնենք Ղափանի ձորերով:

Հոկտեմբերի վերջերն է արդեն: Վերին գոտիներում ձմեռնամուտ է, ավելի բարձրերում՝ իսկական ձմեռ: Մեղրիում, Նոյեմբերյանում, սակայն, նոր են գունազարդվում ծառերը: Աշնան ոսկեղեն օրերը կարծես մոռացել են տվել ձմռան մասին: Իսկապես, ի՞նչ ձմեռ, երբ ձյունը նստելու տեղ չունի և մեկ-երկու գիշերվա հյուր է միայն: Աշնան գույները երկար ժամանակ չեն խամրում այստեղ: Ո՞ւմ չեն հիացնի նռան պես վառվող խաղողի լիքը ողկույզները, մեղրահամ թուզը, նուռը, նուշը, որոնցով լի են Մեղրու հովիտն ու Շվանիձորը: Իսկ եթե գնաք Նոյեմբերյանի «Զեյթուն» սովխոզը, ձեր աչքով կտեսնեք, թե ինչպես են փարթամացել ձիթենին, մրտենին, դափնին:

Աշուն, քաղցր ու սիրելի...

Վաղուց չվել է կռունկների վերջին երամը, բայց մտեք Երևանի շուկաները: Ո՞վ կասի, թե խոր աշուն է, ձմեռնամուտ: Առաջվա պես ամեն ինչ հարազատ դաշտերի բուրմունքով է շնչում: Թվում է, թե մշտադալար այգիներից ու բանջարանոցներից են բերված սեխն ու ձմերուկը, պոմիդորն ու բադրիջանը, խաղողն ու մրգերը: Գույների, համի ու հոտի ինչպիսի՜ ցուցահանդեսներ են դրանք: Աշունը փեշերը հավաքել, թխսամոր նման ծվարել է շուկաներում և իր բարիքներն է բաշխում Նոր տարվա սեղանների համար:

Իսկ մենք, նրա եկած ճանապարհով, մտովի գնանք հարազատ դաշտերը, այգիներն ու անտառները: Դեռ որքա՜ն գույն ու բույր կա հավաքելու, որքան ձայն ու շշուկ: Այդ գույները նկարիչների ներկապնակներում են և մեր աչքերի մեջ: Այդ ձայները հայրենի մեղեդիների մեջ են և մեր սրտերում: Աշնան լիությունը դարձել է հաց և գինի մեր սեղաններից անպակաս: Նրա գեղեցկությունը դարձել է բանաստեղծություն.

«Աշուն, քաղցր ու բաղձալի,
Ի՞նչ խոսքերով երգեմ քեզ»:

Այո՛, ի՞նչ խոսքերով, երբ ինքը աշունը երգ է, լիություն, գույն ու բույր:

Թող միշտ առատ լինի քո կողովը, հայրենի երկրի ոսկեվառ աշուն:

յուղատնտես Նավասարդյանը յոթանասուն տարեկան էր, ամուրի, հարազատներ շատ ուներ Վաղարշապատում, բայց ապրում էր մենակ, հին տան մառանում: Ամեն օր, առավոտը շուտ դուրս էր գալիս տնից և ուղևորվում դեպի խաղողի այգին: Գևորգ եղբոր կինը՝ տիկին Երանուհի Նավասարդյանը, կանաչ թաշկինակի մեջ ուտելիք էր կապում, որ հետը տանի: Նա ոտքով էր գնում, ոտքով էլ ետ գալիս այգուց: Այգին իրենը չէր և ոչ էլ իր բարեկամներինը, չնայած ինքն էր տնկել Խաչիկ վարդապետի հետ «Խանգարված եկեղեցու» (Զվարթնոց) լուռ ավազուտներում:

Մենք երբեմն գնում օգնում էինք նրան, եթե մեր արածը կարելի էր օգնություն համարել: Երբ կեսօր էր դառնում, ուտում էինք իր բաժին օրապահիկը և չէինք նկատում, որ քաղցած է մնում: Դրանից հետո մեզ տուն էր ուղարկում, իսկ ինքը մնում էր մինչև ուշ երեկո: Երեկոյան դիմավորում էինք նրան Հռիփսիմեի մոտ: Պատահում էր, որ հետը արքատ էր բերում, կամ որևէ գործիք՝ վերանորոգելու, ձեռքից առնում, տուն էինք հասցնում: Ինքը հոգնած գալիս, թափ էր տալիս շորերի փոշին, բացում կոշիկների կապերը: Իսկ մենք ջուր էինք հանում ջրհորից, որ լվացվի:

Երբ նանը չէր լինում, իսկ նա միշտ էլ տանը չէր լինում, մտնում էինք մառանը, թերթում հաստափոր գրքերը: Գրքերի մեծ մասը ռուսերեն էին: Ավարտել էր Պետերբուրգում: Կային նաև գերմաներեն, ֆրանսերեն, ճապոներեն, իտալերեն գրքեր, բոլորն էլ՝ պատկերազարդ ու շքեղ: Հայերեն գրքերն առանձին էր պահում գյուղատնտեսը, այս գրքերին չէր խառնում: Նրանք շքեղ չէին:

— Ձեռք չտաք,— ասում էր մեզ նրա եղբոր որդին՝ որբացած Ֆիլիպը:— Աստծու գրքերն են: Սրանց կարելի է ձեռք տալ տարին մեկ անգամ միայն:

Մենք չէինք համարձակվում ձեռք տալ, բարձր խոսել, աղմկել նրանց ներկայությամբ: Նրանք մի տեսակ ճնշում էին մեզ, և մենք ցանկանում էինք կռանալ, համբուրել: «Տարին մեկ անգամը» Նոր տարվա օրն էր: Սպասում էինք այդ օրվան բոլորս: Գալիս էր նաև այդ օրը: Գյուղատնտեսը հավաքում էր մեզ, մոմեր էր վառում, կրակ էր անում բուխարիկում: Գրքերը հանում, դնում էր սեղանին և թույլ էր տալիս, որ ձեռք տանք, թերթենք, թռչնագիր տառերին նայենք: Մենք այդպիսի գրքեր տեսել էինք: Հին ձեռագրեր էին դրանք: Մեր տատերն ու պապերը համբուրում էին այդ գրքերը և մեզ էլ սովորեցնում, որ համբուրենք, պահպանենք: Այդ գիշեր գյուղատնտեսը տխուր երգեր էր երգում իր խռպոտ ձայնով և երգերն ավելի տնքոցի էին նման, քան երգի: Նա սգում էր, սգում էր երկար ու մենակ՝ իր զոհված Արամ եղբոր կորուստը:

# ԳԵՂԱՄ ԱՊԵՐԸ

*ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ*

Այդ տարի գարունը ուշացավ, այն լի էր տագնապով: Եկեղեցիների պատերի տակ, բակերում, այգիներում, շուկաներում խռնված հայ գաղթականները մեռնում էին սովից ու ժանտախտից: Որբ երեխաների մի մեծ խումբ հավաքվել էր Զվարթնոցում և օգնություն էր խնդրում նրանցից: Ծերունի գյուղատնտեսը շփոթվել, չգիտեր ի՞նչ աներ:

Գարուն էր: Աշխարհի ցավերին անտեղյակ կանաչը ծլում, դուրս էր գալիս հողի երեսը: Երեխաները պոկում ուտում էին: Կանաչել էր նաև խաղողի այգին: Ծերունի գյուղատնտեսը մտնում էր թմբերը, ինքն իր ձեռքով հավաքում կանաչ մատերը, եփում և այդպես ուտեցնում սովատանջ երեխաներին: Խոլերան մտավ և այստեղ: Գեղամ ապերն այլևս տուն չէր գալիս: Գիշերում էր որբերի հետ, Զվարթնոցում: Քնեցնում էր նրանց, խնամում այնպես, ինչպես կարող էր: Մարդիկ վախենում էին Զվարթնոցից: Նա ինքն էր հողին հանձնում մեռած երեխաներին, ինքն էր լալիս յուրաքանչյուրի համար: Տախտակի կտորներ էր սարքել, հասարակ մատիտով գրում էր տախտակի վրա մեռնողի անունը և կապում փոքրիկի ոտքից, նոր հանձնում հողին: Բայց կային շատ փոքրիկ երեխաներ, որոնք իրենց հայրանունը և ազգանունը չգիտեին:

## ՀԱՅՐԵՆԱԿԱՆ

*ՀՈՎՐՈՍ ԱՊԵՐ*

**Ես արտասուք եմ
Ժեռ քարից քամված,
Ապառաժ քար եմ
Լեռներին գամված:**

**Ես սար ու ձոր եմ,
Ես՝ կարմիր կակաչ,
Ես սառն աղբյուր եմ
Ու առվի կարկաչ:**

**Կառուցման երգ եմ,
Մուրճերի զնգոց,
Ես վերածնված
Երկիրն եմ հայոց:**



Այդ դեպքում տախտակի վրա ազգանունը գրում էր Նավասարդյան, հայրանունը՝ Գեղամի։ Այդպիսով նա ամեն օր թաղում էր իր որդիներին։ Ամեն օր սգում էր նրանց համար։ Մենք ծածուկ գնում էինք Ջվարթնոց, ինչ ձեռքներս էր ընկնում, տանում էինք՝ չորթան էինք տանում, հացի փշրանքներ, գարի։ Գյուղատնտեսը սպաս էր եփում, վայրի համեմ էր գցում մեջը, բռնում էր փոքրիկների ձեռքերից, պտտվում կրակին դրած կաթսայի շուրջը ու պարելով երգում.

Լե կտե, լե, լե,
Լե կտե, լե, լե,
Լելե կտե, մարում է։

Ի՞նչ երգ էր այդ։ Այդ երգը գիտեին բոլոր որբերը։ Երգում էին և մարում... Գեղամ ապերը սրբում էր աչքերը, գրկում էր ամենաթույլերին, փորձում էր տաքացնել իր մարմնով, փրկել։ Ամեն երեկո պակասում էին փոքրիկները։ Եվ այնքան պակասեցին, որ մի օր էլ ծեր գյուղատնտեսը մնացածներին հավաքեց բերեց աղյուսե միհարկանի տունը և հանձնեց տիկին Երանուհու խնամքին.

— Լողացրո՛ւ փոքրիկներին, մի բա՛ն ճարիր թող ուտեն։

Ասաց, ինքը ներս մտավ մի քիչ հանգստանալու։ Պառկեց ու ծանր-ծանր տնքալով քնեց։ Նա հոգնել, բոլորովին ծերացել էր վշտից։

— Չի դիմանա,— մրմնջում էին գյուղատնտեսի քույրերը,— խե՛ղճ ապեր, չի դիմանա։

Եվ նա անկողին ընկավ ու այդ օրերին մեռան տուն բերած վերջին երեխաները։ Իսկ երբ նորից բարձրացավ և դուրս եկավ իր տնից, ծանրացած ու հոգնած ոտքերը առաջ չէին գնում այլևս։ Ջվարթնոց հասնել չէր կարողանում, բայց փորձում էր հասնել։ Քարշ էր գալիս փոշոտ ճանապարհով, նստում ճամփին։ Եթե տեղ էր հասնում, մնում էր այնտեղ կամ նորից ետ գալիս։ Գալիս մտնում էր մառանը, դուռն ամուր փակում, որ մարդիկ չտեսնեն իրեն և ինքն էլ ոչ ոքի չհանդիպի։ Մենք նայում էինք մառանի պատուհանից, դռան ճեղքերից։ Տեսնում էինք, թե ինչպես էր մոմը վառում, ակնոցը դնում քթին, գիրքը բացում ու նստում կարդալու։ Իսկ այնտեղ, Ջվարթնոցում չորանում էր այգին, պատուտակը խեղդում էր խաղողի վազը։ Քամիները հավասարեցնում, ցրում էին մանուկների գերեզմանների հողաթմբերը։

— Էլ Գեղամ ապեր չկա՛,— ասում էր մեզ տիկին Երանուհին,— էլ բան չի մնացել նրանից։ Գնացե՛ք ձեր տները, երեխանե՛ր։

Մենք գնում, հեռանում էինք։ Նա այլևս մեզ ներս չթողեց։ Նոր տարվա գիշերը մենակ անցկացրեց, իր

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

# ԻՄ ՀԱՅԱՍՏԱՆ



*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

Շատ գիշերներ նստած անքուն,
Պատմությունդ եմ ես կարդացել,
Ե՛վ տխրել եմ լուռ ու թաքուն,
Ե՛վ քո փառքով հպարտացել:

Տեսել ես դու ավեր, ավար,
Մանուկներիդ սրախողխող,
Ավերել է թշնամին չար
Քո օջախը շեն ու խաղաղ:

Բայց օրերին այն հողմածեծ,
Նոյեմբերյան մի առավոտ,
Կարմիր արև է ճառագել,
Բուժել վերքը քո դարավոր:

Եվ ապատված շղթաներից,
Հզորացել օրը-օրի,
Պալատներ ես դու կառուցում՝
Փոխարեն մութ խրճիթների:

Քարից մետաքս ես դու հանում
Ու ջրերից՝ լույսեր անմար,
Ի՛մ Հայաստան, կյանքս ուզես՝
Չեմ խնայի ես քեզ համար:

Կուզես լինեմ ես շինարար,
Կուզես՝ հովիվ, կուզես՝ զինվոր,
Միայն ծաղկի՛ր դու դարեդար,
Շողա՛ փառքով քո հին ու նոր:

եղբոր որդի Ֆիլիպի հետ: Մոմեր չվառեց, մեզ չկանչեց:

Աշուն եկավ, թախծոտ, մշուշապատ աշուն: Արագածից սառը քամիներ էին փչում, Արայի լեռան գագաթին ձյուն էր նստել: Կաթում էին մեր կտուրները. դռներն ու պատուհանները փակ էինք պահում: Նոյեմբերի վերջին օրերին գյուղատնտեսին տեսանք իրենց դռան առջև նոր շորեր հագած, վաքսած կոշիկներով: Կրծքին կարմիր ժապավեն կար: Կանգնած սպասում էր: Բայց մենք չտեսանք, թե ինչպես դիմավորեց նրանց, որոնց սպասում էր: Տիկին Երանուհին պատմում էր, որ նա սպասել էր երկար, շատ երկար, մինչև որ դիմավորել էր Աշտարակից իջնող ռուս հեծյալների գնդին և նոր միայն տուն մտել: Իսկ հաջորդ օրը փորձել էր Զվարթնոցը գնալ և չէր կարողացել: Նրան գտել էին կես ճանապարհին: Նա գնացել էր որբերի գերեզմանները կարգի բերելու, ծաղիկներ դնելու նրանց վրա, խաղողի այգին տեսնելու:

— Թողե՛ք, երեխանե՛ր, թողե՛ք հանգստանա Գեղամ ապերը,— համոզում էր մեզ տիկին Երանուհին և կամաց լալիս:— Մեղք է Գեղամ ապերը, շա՜տ մեղք է:

Մենք հեռանում էինք և քանի գնում, այնքան ավելի քիչ էինք հայտնվում:

Դրանից հետո անցավ մեկ թե երկու տարի: Մենք մեծացանք, լրջացանք: Գնում հարցնում էինք տիկին Երանուհուն, թե ինչպես է Գեղամ ապերը, բայց ներս չէինք մտնում, չէինք անհանգստացնում ծերունի գյուղատնտեսին: Եվ մի օր էլ նորից տեսանք նրան:

Նա քայլում էր հենված հաստ ձեռնափայտին, իր հին շորերը հագին, ակնոցը քթին, հաստ շղթայով ժամացույցը բաճկոնի գրպանին: Նա գնում էր Մատենադարան: Գնում էր ձեռագրերը տեսնելու: Ուխտավորի նման էր գնում: Շեմաքարերին նստած մարդիկ ոտքի էին կանգնում, գլխարկները հանում և քնքշաբար բարևում անցնող ծերունին: Մի կին մոտեցավ, համբուրեց նրա չորացող ձեռքը: Մի պահ շվարած կանգնեց Գեղամ ապերը, ապա նորից առաջ գնաց: Մեղմ քամին խառնում էր մազերը և շոյում կնճռոտ դեմքը: Նրան դուր էր գալիս գարնան քամին: Այնպես էր քայլում, ասես հրաժեշտ էր տալիս ծանոթ վայրերին:

Այդ տարին նոր, խորհրդային իշխանությունը նրան հատուկ թոշակ նշանակեց: Այդ առաջին թոշակն էր, խորհրդային իշխանության նշանակած առաջին թոշակը: Բայց նա գնաց ու հրաժարվեց.

— Ես մենակ մարդ եմ: Այդ թոշակը տվեք նրան, ով երեխաներ ունի:

Նրան փորձել էին համոզել, որ չհրաժարվի, բայց չէին կարողացել:

— Տվեք երեխաների՛ն,— պնդել էր նա ու հեռացել: Նա այդպես էլ թոշակը չստացավ: Նա մնաց աղյուսե տան հին մառանում իր հուշերի և հիշատակների հետ, մինչև մի օր էլ եկան, հավաքվեցին գլխաբաց մարդիկ, լուռ ու անխոս հանեցին նրան մառանից ու տարան:

— Մեղք էր Գեղամ ապերը,— փողոցում կանգնած լալիս էր տիկին Երանուհի Նավասարդյանը,— շա՜տ մեղք էր:



# ՄԵՐ ՆՈՐ, ՄԵՐ ՀԻՆ ԳԱՆՁԱՏՈՒՆԸ

*ԱՍԱՏՈՒՐ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

Քարե լայն, շքեղ ու հանդիսավոր աստիճանները առաջնորդում են վերև ու վերև: Մուտքի առջև ողջույնի են կանգնել Մեսրոպ Մաշտոցը, ապա նրա աշակերտ Կորյունը, քիչ հետո՝ Մովսես Խորենացին, Անանիա Շիրակացին, Մխիթար Գոշը, Գրիգոր Տաթևացին, Ֆրիկը և Թորոս Ռոսլինը: Այնուհետև այս գանձատան աշխատակիցները, իսկ հետո...

Սա մեր ազգային հպարտության օջախներից է, մեր Մատենադարանը:

Հինավուրց ձեռագրերի մի աշխարհ... Ձեռագրերից ամենաերիտասարդը հարյուր տարեկան է, ամենատարեցը՝ հազար հինգ հարյուր: Նրանցից ոմանք մեծ ու վիթխարի ծավալ ունեն, ոմանք՝ շատ փոքրիկ, մեկը՝ վնասված, մյուսը՝ բոլորովին առողջ, մեկը՝ գույնզգույն նկարներով, մյուսը՝ շքեղ կազմով...

Այդ ձեռագրերի մեջ կարելի է տեսնել հին ժամանակների բոլոր հայ գիտնականների, բանաստեղծների, մանկավարժների, քերականների, երաժիշտների, մաթեմատիկոսների, տիեզերագետների, աշխարհագրագետների, ճանապարհորդների և ուրիշների գործերը: Այնտեղ մեծ թիվ են կազմում նաև այլ ժողովուրդների գրականությունից կատարված ընտիր թարգմանությունները: Այս ձեռագրերի մեջ է, որ աստիճանաբար հավաքվել է հայ ժողովրդի 1500 տարվա ընթացքում ստեղծած գիտությունն ու արվեստը:

Մենք այսօր չէինք ունենա այդ գանձերը, եթե չլինեին այն մարդիկ, որոնք կոչվում են հեղինակներ, գրիչներ, ծաղկողներ, պատվիրողներ, կազմողներ, փրկողներ և պահպանողներ:

Հեղինակները հենց նրանք են, ովքեր գրել են վերևում հիշված ստեղծագործությունները: Հայ ժողովուրդը միջնադարում ունեցել է հարյուրավոր անվանի, իսկ հաճախ էլ աշխարհահռչակ հեղինակներ: Նրանց գործերը տարածելու համար ծնվել են հազարավոր գրիչներ, որոնք մեծ համբերությամբ, ամենածանր պայմանների մեջ, հատիկ-հատիկ ու գեղեցիկ

տառերով արտագրել են բոլոր ստեղծագործությունները: Գրիչներին օգնել են նկարիչները, որոնց կոչել են ծաղկող կամ մանրանկարիչ: Նրանք գույնզգույն ներկերով և մեծ վարպետությամբ ծաղկազարդել են գրված ձեռագրերը՝ դարձնելով հրաշալիքներ: Գրիչներին ու ծաղկողներին օգնել են առանձին մարդիկ, որոնք կոչվել են պատվիրատուներ: Նրանք ծանոթացել են եղած գրականությանը և պատվիրել՝ իրենց ընտրած գրքերը ընդօրինակել: Այն ժամանակների պայմաններում ձեռագրերը չէին կարող երկար դիմանալ, եթե չլինեին կազմողները: Նրանք հմուտ ու ճաշակավոր վարպետներ էին, որ փայտից ու կաշուց ըստեղծում էին գեղեցիկ, ամուր, հարմարավետ կազմեր և դրանք կարդարում ոսկուց, արծաթից և թանկագին քարերից պատրաստված կարդերով:

Ամեն մի ձեռագիր իր բովանդակած նյութերի և ճաշակավոր մշակվածության շնորհիվ դառնում էր մի իսկական գանձ: Ուստի ձեռագրերը սիրվում և փայփայվում էին բոլորի կողմից: Առանց այդ մեծ սիրո այսօր մենք զրկված կլինեինք մեր ձեռագրերից: Ինչպես հայտնի է, օտար նվաճողները սպանում, գերում էին ոչ միայն հայ ժողովրդի զավակներին, այլև հայկական ձեռագրերը: Մեզ հասած ձեռագրերից շատերը մի քանի անգամ տարվել են գերի և նորից փրկվել մեր հայրենասեր ու գրասեր նախնիների շնորհիվ: Դրա համար նրանք չէին խնայում իրենց հարստությունը, դրամը, անասունները և նույնիսկ կյանքը: Եղել է դեպք, երբ աշակերտներն ու ուսուցիչները թշնամու ահից տարել, քարայրների մեջ են թաքցրել ձեռագրերը: Թշնամին իմանալով այդ մասին, բռնել է նրանց և ստիպել, որ հայտնեն թաքստոցի տեղը: Նրանք հրաժարվել են և սպանվել, գերադասելով մեռնել, քան թշնամուն հանձնել հայրենի սրբությունները:

Հայկական ձեռագրերը գրվել ու պահպանվել են հին Հայաստանի համարյա բոլոր բնակավայրերում: Աստիճանաբար ստեղծվել են տեղական մատենադարաններ, նրանցից հայտնի են եղել Էջմիածնի, Վասպուրականի, Տարոնի, Սյունիքի, Հաղպատ-Սանահինի, Կիլիկիայի և ուրիշ տեղերի ձեռագրական կենտրոնները:

Համաշխարհային Առաջին պատերազմի ժամանակ ահավոր վտանգ էր սպառնում նաև հայկական ձեռագրերին: Հայ գրասերների ու գործիչների անձնազոհ ջանքերով հնարավոր եղավ փրկել նրանց հիմնական մասը: Մեծ օգնություն ցուցաբերեց սիրելի Մոսկվան, որտեղ 1915—1922 թվականներին ապահով ապաստան գտան Էջմիածնի Մատենադարանի 4660 ձեռագրերը:

1920 թվականի դեկտեմբերի 17-ին Խորհրդային Հայաստանի հեղկոմի որոշումով ձեռագրերն էլ համայնացվեցին պետական հարստություն և վերցվեցին կառավարական խնամքի տակ:

Այն օրվանից հայկական ձեռագրերի համար ըստեղծվեց մի նոր կյանք: Գնալով հարստացավ ու հարըստանում է նրանց քանակը:

Մաշտոցի անվան Մատենադարանում հավաքվել պահվում է այժմ մոտավորապես 13 000 հայերեն ձեռագիր, որից 2000-ը՝ պատառիկ: Դրանց կողքին խընամքով պահվում են նաև ուրիշ լեզուներով գրված շուրջ 2000 ձեռագիր նմուշներ՝ Մատենադարանի հարըստության ընդհանուր թիվը մոտեցնելով 15 000 միավորի:

Մեր սիրելի պետությունը ամեն միջոցի դիմել է, որ նրանք բուժվեն, նորոգվեն և աչքի լույսի պես պահպանվելով՝ փոխանցվեն հաջորդ դարերին: Մատենադարանում միաժամանակ շատ գիտնականներ կան, որոնք ուսումնասիրում են ձեռագրերը, պեղում նըրանց մեջ թաքնված դարերի պատմության մինչև օրս անհայտ խորշերը:

Հայկական ձեռագրեր կան նաև ուրիշ վայրերում՝ Թբիլիսիում, Մոսկվայում, Լենինգրադում, ինչպես նաև արտասահմանում: Ձեռագրերով հարուստ են հատկապես Վենետիկի, Երուսաղեմի, Վիեննայի հայկական մատենադարանները: Բոլոր տեղերում պահվող ձեռագրերի քանակը հասնում է 26.000 հատորի: Դա շատ մեծ ու բարձրարժեք հարստություն է, որով հայ ժողովուրդն իր արժանի տեղն է գրավում աշխարհի հին ու կարգացած ժողովուրդների շարքում:

## ՁՄԵՌՆԱՄՈՒՏ

*ՄԱՄԻԿՈՆ ՆԵՐՍԻՍՅԱՆ*

Տերևները թափվեցին,
Քամին քշեց ու տարավ,
Հովիվները տխրեցին,
Վերջին խարույկն էլ հանգավ:

Անտառները մերկացան,
Երգը լռեց ջրերի,
Չվող հավքերն հեռացան՝
Գարնան երգը շուրթերին:

Ցուրտ է դրսում, սաստիկ ցուրտ,
Հողը մերկ է տակավին...
Ամպե՛ր, դե ձյո՜ւն բերեք, որ
Ձմեռն իրեն նմանվի:



# ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԴԱՍԸ

*ՀՈՎՀԱՆՆԵՍ ՄԵԼՔՈՆՅԱՆ*

*Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ*

Մեր դպրոցի պատմության ուսուցիչը մի ձեռք ունի՝ ձախ ձեռքը: Շատ ենք սիրում նրան, ամենից շատ: Եթե պատերազմ չլիներ և նա երկու ձեռք ունենար, գուցե այդքան չսիրեինք: Նրա մազերն առաջ սև էին, արդեն սպիտակել են, աչքերը տրխուր են, իսկ շրթունքներին միշտ ցավոտ ժպիտ կա: Օրագրերում և դասամատյաններում թվանշան դնելիս, նա կարծես ամաչում է, որ չի կարողանում հինգը հինգի նման գրել, երեքը՝ երեքի: Մի ժամանակ մենք օրագրերի մեջ նույն գույնի թանաքով զգուշորեն ուղղում էինք նրա դրած ծուռումուռ թվանշանները, լրացնում դրանց պոչերն ու թևերը: Իսկ մի անգամ Առնակը գեղեցկացրել էր նաև նրա ստորագրությունը: Մեր ուսուցիչը նկատել էր և մի օր, դասը սկսելուց առաջ, ասաց.

— Սիրելինե՛րս, ամեն մարդ իր ստորագրությունն ունի, չի կարելի փոխել:

Մենք շատ ազդվեցինք նրա խոսքերից, իսկ Առնակը գլուխը դրեց նստարանին, և ես տեսա, թե ինչպես կարմրեցին նրա ականջները: Դրանից հետո ես և մեր դասարանի բոլոր տղաները ու աղջիկները մեր օրագրերում այլևս չուղղեցինք նրա ծուռումուռ թվանշանները: Գնալով դրանք մեր աչքին գեղեցիկ դարձան:

— Զարե՛հ, մոտեցիր գրատախտակի՛ն,— ասաց պատմության ուսուցիչն այդ օրը՝ ներկաբացակա անելուց հետո:

Զարեհը մոտեցավ գրատախտակին և սկսեց.

— 17-րդ դարի առաջին կեսին, Անգլիայում...

— Սպասի՛ր,— ընդհատեց ուսուցիչը և դասամատյանը փակեց,—գնա՛ ուսուցչանոց, սեղանի վրա քարտեզ կա, բե՛ր... ես մոռացա բերել:

Իհարկե, նա ոչ թե մոռացել, այլ չէր կարողացել մի ձեռքով չորս քարտեզ բերել ուսուցչանոցից:

Զարեհը գնաց, իսկ ուսուցիչը նայելով մեր լուռ ու փոքր-ինչ խորասուզված հայացքներին, ասաց.

— Մինչև Զարեհը վերադառնա, ուզում եմ պատմել մի դեպք կապված քարտեզի հետ:

— Պատմեցե՜ք... Պատմեցե՜ք,— կանչեցին ետևի շարքում նստածները:

— Բոլորդ էլ գիտեք մեր գյուղի մեծ պահեստը,— սկսեց ուսուցիչը:

— Գիտենք...

—... Պատերազմի տարիներին,— շարունակեց պատմության ուսուցիչը,— այդ շինությունը մեր գյուղի դպրոցն էր: Մի անգամ, Նոր տարվա նախօրեին, հանկարծ դպրոցից չքացավ պաստառապատ մի քարտեզ: Ես նոր էի վերադարձել ռազմաճակատից և մի շաբաթ չկար, որ դասավանդում էի: Ընկնեցինք այս կողմ այն կողմ ընկնել, որոնել, բայց քարտեզը չկար ու չկար... Անցան օրեր: Եվ ի՞նչ պարզվեց. աշակերտուհիներից մեկն էր տարել: Իմացանք, կանչեցինք նրան ուսուցչանոց, պահանջեցինք ետ բերել քարտեզը. աղջիկը լաց եղավ և ասաց. «Չեմ կարող ետ բերել, ահա՛ քարտեզը»: Այդ ձմռանը շատ էր մաշված եղել նրա հին զգեստը և նա քարտեզի պաստառը լվացել ներկել և շրջազգեստ էր կարել իր համար... Ի՞նչ էր մնում անել՝ դասերն անցկացնել առանց քարտեզի... Նույնը կարո՞ղ եք անել և հիմա...

— Կարո՛ղ ենք, կարո՛ղ ենք,— ասացինք մենք:

— Հիմա պատերազմ չկա, ոչ մեկի մտքով էլ չի անցնի քարտեզի պաստառից զգեստ կարել... Քարտեզներ էլ շատ ունենք:

Ուսուցիչը երևի էլի ինչ-որ բան էր ուզում ասել, բայց այդ պահին ներս մտավ Զարեհը՝ քարտեզի մեծ փաթեթը թևատակին: Կախեցին քարտեզը, պատմության ուսուցիչը վերցնելով ցուցափայտը սկսեց.

— Գյուղացիական ապստամբությունները Անգլիայում...

Ես աչքերս քարտեզից կտրե-



ցի և նայեցի լուսամուտից դուրս: Հեռվում լեռներն էին՝ կատարները ձյուն, հետո սկսվում էր փոքրիկ, մշուշոտ մի հարթավայր, ուր երևում էին կապույտ բարալիկ ծխեր ու կանաչ բարդիներ: Լեռնապարից ու հարթավայրից դեպի այս կողմ քարե ափերով մեր ձորն էր, որ ինչ-որ ժամանակ կոչվել է Արջաձոր: Արջաձորի ձախ կողմում կարծես հողի մեջ պահ մտած հյուղակներ են եղել, որոնց երդիկներից առավոտները ծուխ է ելել երկինք, և արևի շողը ընկել է ներս: Հողաշեն խրճիթների երկու թևերին իրենց արծաթե խաչերն են երկինք պարզել մի վանք, մի եկեղեցի: Եվ այստեղով անցնող ճամփորդները հյուղակներին անուն են դրել՝ Խաչագյուղ:

— Զարե՛հ, գիտե՞ս մեր գյուղի հին անունը,— հանկարծակի դառնում հարցնում եմ ընկերոջս: Նա զարմացած ինձ է նայում:

— Ի՞նչ կապ ունի անգլիական գյուղացիական ապստամբությունների հետ,— փսփսուքով հարցնում է Զարեհը:

— Երեկ դասերից հետո պապիս հետ գնացինք...

— Թո՛ղ, մի՛ խանգարիր,— ասում է Զարեհը:

Երեկ դասերից հետո պապս վերցրեց օրագիրս և սկսեց թերթել:

— Գերազանց, գերազանց, լավ, գերազանց... Աչքերիս լույս իջավ,— այս խոսքի վրա նա համբուրեց գլուխս: Հետո ինչ-որ մտքի մեջ ընկավ, լռեց մի քիչ ու, իջնելով թախտից, ձեռնափայտն առավ ու ասաց.

— Ծավա՛րշ, լավ է, որ շատ բան գիտես: Իմ ուզածը էդ է և մեկ էլ էն, որ իմանաս քո գյուղի, քո տան մասին էլ: Գիտենաս՝ մենք ով ենք, որտեղից ենք եկել...

Մենք դուրս եկանք տնից, քայլեցինք Արջաձորի կողմը: Ես լուռ լսում էի, իսկ պապս ձեռնափայտով, թըկ-թը՛կ, կարծես հողն արթնացնելով, պատմում էր, որ արևի տակ եղել է Մուշ քաղաք, ուր ծնվել և ապրել են մարդիկ: Հետո աշխարհում պատերազմ է եղել, կոտորած ու երկրաշարժ է եղել: Հիմքեր են քանդել, պատեր են փլել, արև է խավարել... Ով իմանա էլ ինչ: Պապս և շատ ուրիշ պապեր թողել են իրենց Մուշ երկիրը, եկել են և Շիրակի դաշտում, Արջաձորի ձախ ափին հիմքեր փորել, տներ են շինել:

Եվ գյուղը կոչվել է Խաչագյուղ:

Հին գյուղի փլատակներից ներքև, մի մեծ քարանձավի մոտ ես ու պապս կանգ առանք.

— Գիտե՞ս սա ինչ է,— հարցրեց պապս:

— Քարանձավ է,— պատասխանեցի ես:

— Գիտեմ, որ քարանձավ է,— ասաց նա և կկոցեց աչքերը, մի պահ լուռ իրար բերեց մտքերը, ապա շարունակեց.— Մի տղա կար մեր գյուղում, Արշակ անունով, քեզ նման փողկապ էր կապում: Հիմի էլ ասես աչքիս առաջ է. գանգուր մազերով, խելացի, պեծին տվող աչքերով... Հեղափոխության առաջին տարիներն էին, Խաչագյուղի վրա կարմիր դրոշակ կար: Աղասարը՝ գյուղի մեծահարուստը, ինչքան ցորեն որ ուներ, իսկ նա մենակ ավելի շատ ցորեն ուներ, քան ամբողջ գյուղը միասին, պահել էր անտակ հորերում: Մենք մի բուռ սերմացուն ինչ է, չունեինք: Հիմի նոր կարմիր օրենքով հողը տվել էին մեզ, ձյունն էլ օր-օրի քաշվում էր, հողը խոփի սպասում: Իսկ մենք սերմացու չունեինք: Չէ՛, ասացինք, խաթրով չլինի, զոռով կգտնենք Աղասարի հորերի տեղը, սերմացուն կհանենք, կբաժանենք: Աղասարը իմանում է այս և մի գիշեր իր մարդկանցով բացում է հորերը և եղած ցորենը բերում լցնում է էս քարանձավը, որ հետո էլ գյուղից հանի: Արշակ, դու Արշակ, պատահաբար տեսնում է թե ձայն է լուսաղեմին առնում, մեկ էլ լուր է բերում գյուղսովետ, թե սերմացուն քարանձավի մեջ է: Եկանք էստեղ, գտանք բաժանեցինք, հետո վարուցանքի օրերը եկան: Իսկ Արշակը... Այդ գիշեր, այն գիշեր Աղասարին հետևելիս մրսել էր, թունդ մըրսել էր, հիվանդացավ և...

Եվ պապս ձեռնափայտը պարզեց մի կողմ.

— Ա՛յ, էն է նրա գերեզմանը:

Մոտեցանք Արշակի գերեզմանաքարին: Այնքան մոտ էին նրա ծննդյան և մահվան փորագիր թվականները:

— Զարե՛հ,— մի պահ հայացքս պատուհանից կտրելով, դարձա իմ կողքի նստածին:

— Ի՞նչ...

— Վաղը մեր դրուժինայով գնա՞նք Արշակի մոտ:

— Ո՞վ է Արշակը...

— Դասերից հետո ես քեզ ամեն ինչ կպատմեմ,— ասում եմ ու նորից նայում լուսամուտից դուրս:

Վաղը... Մենք շուքով կքայլենք: Առջևից՝ թմբկահարները: Արշակի շիրմաքարին ծաղկեփնջեր կդնենք, և ես կպատմեմ, թե ով է եղել Արշակը:

Հետո այդ օրը շատ բաներ էլ պատմեց պապս... բայց ես նայում եմ դիմացի պատին փակցրած մեր քարտեզին, հետո հավաքում եմ ինձ ու սկսում ուշադիր լսել մեր պատմության ուսուցչին.

— Գյուղացիական ապստամբությունները Անգլիայում...

# ՆԿԱՐՉՈՒՀԻՆ

ՌՈՒԲԵՆ ՀՈՎՈՒՆԻ

Մի նայեցե՛ք այս աղջկան,
Նկարել է փոքրիկ Սեթին,
Բայց ո՛չ տետրում նկարչական՝
Այլ ուղղակի շենքի պատին:

Հավաքվել են նրա շուրջը
Երեխաներն իրենց բակի,
«Նկարչուհին» պահած շունչը՝
Սպասում է գովասանքի:

Սակայն ոչ ոք ձայն չի հանում,
Հիացմունքի խոսքեր չկան,
Ասելու էլ ի՞նչ է մնում
Անբարեխիղճ այս աղջկան:





## ՓԱՍՏԵՐ ԵՎ ԴԵՊՔԵՐ ԱՆՑՅԱԼԻՑ

Ալ. ԳՈՐԲՈՎՍԿԻ

— Ես պետք է ձեզ կախեի՜,— կայրացած գոչեց Նապոլեոնը, ավարտելով մինիստր Ֆուշեին ուղղված իր կատաղի խոսքը:

Ինչպե՞ս վերաբերվեց այս առաջարկին Ֆուշեն: Սկսեց վիճել և ասել, թե հարկավոր չէ՞ իրեն կախել: Միակ բանը, որ նա հանդգնեց նկատել, այս ծարգալից խոսքն էր.

— Ես համամիտ չեմ ձերդ մեծության կարծիքին:

Հայտնի է մի դեպք, երբ ռուս արիստոկրատ Գագարինը ինչ-որ դատարկ հարցի շուրջը համարձակվել է առարկել Պավել I-ին:

— Խենթացե՞լ ես, վիճել նրա հե՞տ,— հետագայում հանդիմանում էին նրան ընկերները:—Դրա համար նա քեզ Սիբիր կքշի:

Սոցիալական քիչ թե շատ հավասար դիրքի տեր մարդկանց շրջանում ուրիշի կարծիքի հանդեպ անհանդուրժող վերաբերմունքը

# ՎԵՐՀՈՒՇ

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ

Նշանակություն չունի, որ այս կապված է ինձ հետ: Կարող էր պատահել նաև մեկ ուրիշի հետ:

Կարևորն այն է, որ ինձ համար ամեն ինչ փոխվեց: Մինչ այդ կարծես աշխարհը գլխիվայր էր ու դրանից հետո ուղղվեց:

Պատճառը չգիտեի: Երևի կար մի բան, որ ես չէի հասկանում: Գուցե պատերա՞զմը:

Բայց...

Դպրոցում վատ անուն հանած աշակերտ էի: Իմ անկարգ վարքի պատճառով խեղճ չորրորդ դասարանի պատիվն էլ էր ընկել: Իսկ «վատ վարքս» մեծ մասամբ աշխարհագրության դասերի հետ էր կապված:

Այդ առարկան դասավանդում էր դպրոցի դիրեկտորը: Ամեն անգամ նա դասարան էր մտնում գլոբուսերկրագունդը գրկած: Երբ երևում էր գլոբուսը, ներսս սկսում էր տակնուվրա լինել: Քաղցից: Գլոբուսը աչքիս հաց էր երևում: Մե՜ծ հաց: Այլևս ուսուցչին չէի լսում: Կլանված նայում էի «հացագնդին»: Հավիվ հասցնում էի բերանումս կուտակվող թուքը կուլ տալ, որ չխեղդվեմ:

դարձել է ոչ միայն վեճի, այլև մենամարտի առիթ:

Ուրիշի կարծիքի հանդեպ անհանդուրժող վերաբերմունքը դարձել էր սեփական հեղինակությունը պաշտպանելու, սեփական արժանապատվությունը բարձր պահելու ձև:

Բիսմարկի մի կռույցը ավստրիացի մինիստր-պրեզիդենտ Ռեյխբերգի հետ վերջացել է այնպես, որ Բիսմարկը վեր է թռել ու ցասումով գոչել.

— Մենք հո չե՞նք կարող մեր ընկերների դիվանագիտական հարցերը լուծել Բոկենհեյմյան անտառում՝ ատրճանակները ձեռքներիս:

— Բայց կարող ենք իսկույնևեթ մեկնել, ես պատրաստ եմ անմիջապես մենամարտել:

— Ինչո՞ւ մեկնել,— սառը կայրույթով առարկել է Բիսմարկը:— Այստեղ՝ մեր այգում, բավական տեղ կա դրա համար, դա մեզանից կխլի քառորդ ժամ:

Մտածե՞լ եք արդյոք, թե ինչու են հիմարին հիմար կոչում: Ֆրանսիացի վիպասան Գ. Ֆլոբերը տվել է դրա փայլուն ձևակերպումը. «Հիմարը,— հեգնանքով ասել է նա,— այլ կերպ մտածող մարդն է»: Եվ իսկապես. ամեն մի քաղքենի խորապես համոզված է, որ ամեն ոք, ով այլ կարծիք ունի, քան իր սեփականն է, անպայման հիմար է, բթամիտ, և նրա տեսակետն ուշադրության իսկ արժանի չէ:

Նյուտոնին է պատկանում այս արտահայտությունը. «Միայն հարուստ իմացությունն է մեզ մոտեցնում աստծուն, աղքատիկ իմացությունը հեռացնում է նրանից»: Եվ, իսկապես, գիտելիքներով հարուստ մարդը միայն կարող է ըմբռնել, որ ամեն ինչ հարաբերական է: Իսկ դիլետանտին, մակերեսային գիտելիքների տեր մարդուն թվում է, թե ինքն ամեն ինչ գիտե: Ահա թե ինչու նա իրեն անպայման համարում է իրավացի: Ահա թե ինչու իսկապես լայն աշխարհայացքի և մեծ կուլտուրա-



յի տեր մարդիկ ուշադրությամբ ու հարգանքով են վերաբերում ուրիշի տեսակետին: Նույնիսկ երբ դա հակառակ է իր սեփականին:

Պատմության մեջ հազիվ թե լինի մի մարդ, որն այնքան վիճաբանած լինի, որքան Լենինը: Մենք գիտենք, որ նա իր քաղաքական հակառակորդների ու հեղափոխու-

---

*Դիրեկտորը վերցնում էր քանոնը, մոտենում գլոբուսին: Ու թվում էր, թե ձեռքի քանոնը դանակ է, իսկ գլոբուսը՝ հաց: Հիմա բաժան-բաժան կանի ու մի մեծ պատառ էլ ինձ կտա: Կբռնեմ երկու ձեռքով, կսեղմեմ կրծքիս և կուտեմ՝ մեկ ժամ, երկու ժամ: Կուտեմ ամբողջ օրը, մի տարի, մինչև կյանքիս վերջը կուտեմ, ու հացի պատառը չի վերջանա:*

*— Ի՞նչ ասացի հենց նոր:*

*Հարցնողը դիրեկտորն էր: Հարցը ինձ էր ուղղված լինում: Թե ի՞նչ էր ասել, չէի լսել:*

*— Քեզ հետ չե՞մ, ինչո՞վ է Ասիան բաժանվում Եվրոպայից:*

*Ինչո՞վ է բաժանվում: Չգիտեի: Գիտեի միայն, որ ներսս իր պատերից բաժանվում է դատարկությամբ, որ մեր տանը օրը երկու անգամ են մի-մի կտոր հաց տալիս ինձ, մեկը՝ առավոտյան, մեկն էլ դասերից հետո: Պատասխանելու փոխարեն անմիտ ծիծաղում էի, բզում կողքիս նստածներին ու չգիտեմ էլ ինչեր էի անում:*

*— Դո՛ւրս կորիր,— ասում է դիրեկտորը:*

*Ամեն անգամ այդ խոսքերով էին վերջանում իմ բաժին աշխարհագրության դասերը: Դուրս էի գալիս դասարանից՝ ինքս էլ իմ հերթին դառնացած, ոլորված ականջիս ցավը անցած սրտիս:*

*Երևի դանակը ոսկորին էի հասցրել, որ մի օր էլ դիրեկտորը ընդհատեց դասը: Հավաքեց բոլոր դասատուներին և դպրոցում իմ մնալ-չմնալու հարցը դրեց: Խոսեց նախ ինքը՝ դիրեկտորը:*

*Նրան հետևեցին մյուսները: Խոսեցին մեկը մյուսից խիստ: Լուռ էր միայն հայոց լեզվի ու գրականության չոր ու նիհար դասատուն: Նա մեզ դաս չէր տալիս: Միայն բարձր դասարաններում ժամեր ուներ: Նրանից ոչ մի լավ բան չէի սպասում, այնքան չոր էր ու նիհար:*

*Երբ բոլորը ասել էին իրենց ասելիքները, երբ վճռված էր համարվում ինձ հեռացնելու հարցը, չոր ու նիհար դասատուն կանգնեց: Չլսեցի մինչև վերջ: Փրծկացի անմիջապես: Փղծկացի հուզմունքից, որ ինձ պաշտպան գտնվեց:*

*Երբ գլուխս բարձրացրի, դասարանը դատարկվել էր: Միայն նիհար դասատուն էր կանգնած մոտս:*

*— Դժվար է երջանիկ լինել,— ասաց,— բայց թանկ է այն, ինչ դժվարությամբ է ձեռք բերվում:*

*Նրա աչքերում խոնավություն կար ու ձայնը դողում էր: Ինչո՞ւ: Չհասկացա:*

*...Դրանից հետո դժվար օրեր էլի եղան: Բայց միշտ ականջներումս հնչում էին նիհար ուսուցչի խոսքերը. «Թանկ է այն, ինչ դժվարությամբ է ձեռք բերվում»:*

Ուզբեկստանը Միջին Ասիական հանրապետությունների մեջ ունի կենտրոնական դիրք: Նա տեղադրված է Թուրքմենական, Ղազախական, Կիրգիզական և Տաջիկական հանրապետությունների միջև, հարավում սահմանակից է մեր բարեկամ Աֆղանստանին, զբաղեցնում է 450 հազար քառակուսի կիլոմետր տարածություն. դա զգալի չափով մեծ է Իտալիայից: Նրա տերիտորիայում բնակվում է 12 միլիոն մարդ:






Ուզբեկստանը արևի երկիր է: Շոգ և երկարատև ամառը հնարավոր է դարձնում մշակելու ջերմասեր կուլտուրաներ՝ բամբակ, կանեփ, հարավային մրգեր, թթենի:

Եթե ուզում եք շրջել Ուզբեկստանում, ապա կարող եք օգտվել և՛ երկաթուղուց, և՛ նավից, և՛ օդանավից: Բայց ձեզ համար ուղեցույց թող կդառնան գետաբերաններն ու խոշոր ջրանցքները: Այսպիսով Ուզբեկստանի աշխարհագրության բանալին ջուրն է: Եթե դուք ուշադրությամբ հետևեք Ուզբեկստանի քարտեզին, կտեսնեք, թե ինչպես երկու ոլորապտույտ կապույտ ու հաստ թելանման գծեր անցնում են երկրով. դրանք ուզբեկական խոշոր գետերն են՝ Ամու-Դարյան և Սիր-Դարյան, որոնք կյանք են տալիս երկրին:

Հնուց ի վեր ուզբեկ ժողովրդի քաղաքակրթության կենտրոնները դարձել են մեծ օազիսները, որոնք գոյացել են լեռներից եկող մեծ գետերի շուրջը: Հսկայական տերիտորիա են զբաղեցնում Տաշքենդի, Ֆերգա-

---

թյան թշնամիների հանդեպ ուներ անհաշտ վերաբերմունք: Բայց նա միշտ կարողանում էր տեսնել թըշնամուն և սխալվող ընկերոջը բաժանող սահմանը: Ահա թե ինչու, մազաչափ իսկ չհրաժարվելով իր սկզբունքներից, նա խիստ նրբանկատ էր իր ընդդիմախոսի արժանապատվության նկատմամբ: Մի հին բոլշևիկի վկայությամբ, «Վլադիմիր Իլյիչը ունենալով սեփական արժանապատվության բարձր կգացողություն, յուրաքանչյուր մարդու մեջ կարողանում էր տեսնել ու պահպանել այդ»: Վեճի ժամանակ գործի դնելով բանավիճողի իր ողջ զինանոցը, իր մտքի ու երկաթե տրամաբանության ողջ խորությունը, Լենինը կարողանում էր հաղթել «առանց նրա ինքնասիրությունը վիրավորելու, առանց նրան թևաթափ անելու»:

Ժամանակին Լենինը հաճախ է վեճի բռնվել անգլիացի հեղափոխական Վիլյամ Գալլախերի հետ:



Հետագայում Վ. Գալլախերը՝ Մեծ Բրիտանիայի կոմունիստական կուսակցության քարտուղարը, միջազգային բանվորական շարժման խոշորագույն գործիչը, հիշում է. «Սկզբունքային անողոք քննադատության ենթարկելով իմ դրույթները, Լենինը ամեն անգամ օգտըվում էր առիթից ինձ օգնելու, ասելու այնպիսի բան, որ նկատելիորեն կթեթևացներ այն դժվարին կացությունը, որի մեջ ինձ գցել էին իմ սխալ հայացքները»:

Մենք գիտենք, թե ինչ կրքոտ վիճաբանող էր Մարքսը: Բայց նա ևս իր անհամաձայնությունը դիմացինի տեսակետին «երբեք չէր արտահայտում կոպիտ կամ վիրավորական ձևով. ճիշտ է, վիճաբանության ժամանակ, ասես մրցախաղում, իր հակառակորդին նա իջեցնում էր նժույգից, բայց երբեք ջարդուփշուր չէր անում»:

Ե՛վ Մարքսը, և՛ Լենինը այսպես էին վարվում միայն մի պատճառով. յուրաքանչյուր մարդու մեջ, որի տեսակետին բախվում էին նրանք, տեսնում էին իրենց հավասար անձնավորության, որը նույնքան օժտված է սեփական արժանապատվության և ինքնասիրության զգացումով:

Ամեն անգամ, երբ մենք մարդու հետ կոպիտ կամ անտակտ ենք վարվում, նրա հոգու մեջ նույնպիսի կոպտություն ու անտակտություն ենք սերմանում:

Եվ ընդհակառակը:

Կորոլենկոն կարդում է երիտասարդ Գորկու ձեռագիրը: Ի դեպ, նույնիսկ դեռևս ոչ թե Գորկու, այլ

# ՈՒԶԲԵԿՍՏԱՆ

ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ
*Աշխարհագետ*

նայի, Զերավշանի, Կաշկադարյայի, Սուրխանդարյայի, Խորեզմի օազիսները, որոնք իրարից բաժանվում են չոր տափաստաններով, անապատներով կամ լեռնաշղթաներով: Իսկ կապված են իրար հետ խճուղիներով ու երկաթուղիներով: Ուզբեկները իրենց օազիսների մասին ասում են, որ նրանք ադամանդ են անապատի շրջանակով: Քանի որ Ուզբեկստանում համարյա բոլորը բնակվում են օազիսներում, ապա բնակչությունը այդ տեղերում շատ խիտ է: Օրինակ, Ֆերգանան իր խտությամբ ոչնչով չի զիջում Բելգիային:

Ուզբեկստանի օազիսներում ամենից շատ մշակում են բամբակ:

Սովետական Միությունում մշակվող բամբակի երեք քառորդը տալիս է Ուզբեկստանը: Այստեղ այնքան են հավաքում, որքան Բրազիլիայում, Պակիստանում, Թուրքիայում, Իրանում, Իրաքում, Աֆղանստանում, Իտալիայում և Իսպանիայում միասին վերցրած: Այս բարեբեր երկրի գյուղատնտեսությունը տալիս է նաև մեծ քանակությամբ կարակուլի մորթի, որը ամենալավն է աշխարհում, ինչպես նաև մետաքս ու բրինձ:

Ուզբեկստանի հողն ու ջուրը տալիս են նաև այլ բարիքներ: Եթե աշնանը անցնեք Ուզբեկստանով, ձեզ խորհուրդ կտան Չարջոու կայարանում անպայման գնելու բուրավետ սեխ, իսկ Մարիում խաղող, դեղձ և

---

անհայտ Ալեքսեյ Պեշկովի ձեռագիրը:

— Ձեր ձեռագրում գրված է. «վիգվակ»,—նկատում է Կորոլենկոն,— դա... ըստ երևույթին, վրիպակ է, այդպիսի բառ չկա, պետք է «վիգվամ» լինի:

«Վրիպակ» բառին հաջորդող կարճատև դադարը,—հետագայում մտաբերում է Գորկին,— ինձ գրլխի գցեց, որ Կորոլենկոն մերձավորի ինքնասիրությունը խնայող մարդ է»:

Երբ Կորոլենկոն գտնում է մի քանի նման «վրիպակ» ևս, Գորկին ամոթից կարմրում է: Եվ Կորոլենկոն, այդ անհարմար վիճակը մեղմելու համար, սկսում է պատմել Գլեբ Ուսպենսկու ինչ-որ սըխալների մասին: «Դա մեծահոգություն էր»,— մտաբերել է հետագայում Գորկին:

Այս դեպքը հետք թողե՞լ է, արդյոք, Գորկու հոգում: Անցնում են տարիներ. Կորոլենկոյի շեմից երկյուղով ներս մտած գավառական պատանին դառնում է համաշխարհային անուն հանած գրող: Քսանական թվականներին Գորկին մեծ ուշադրություն է նվիրում հրատարակչության գործին: Լույս է ընծայվում Օսկար Ուայլդի երկերի ժողովածուն Կորնեյ Չուկովսկու ներածական խոսքով: Ակնարկը կարդալուց հետո, Գորկին հեղինակին ուղարկում է մի մանրամասն նամակ, ուր գրում է. «...Ներողություն եմ խնդրում, որ ինձ թույլ եմ տվել մի քանի վրիպակ ուղղել հոդվածում»:



«Սքանչելի էր նրա նրբանկատությունը,— շատ տարիներ անց գրում է Կ. Չուկովսկին:—Հոդվածում ուղղելով ոճական և ուրիշ կարգի սխալներ, նա դեռ ներողություն է խնդրում, որ «իրեն թույլ է տվել ուղղել» մի շարք վրիպակներ: Եվ դրանք վրիպակներ է կոչում իր նրբանկատության պատճառով: Սակայն իրականում դրանք վրիպակներ չէին, այլ սըխալներ»:

Բնական է, որ մարդն իր հասցեին արված քննադատությունն ավելի հեշտ է ընդունում, երբ դա արվում է ընկերական, բարյացակամ տոնով: Եվ, ընդհակառակը, ամենաարդարացի նկատողությունըն անգամ, եթե արվում է անտակտ, վիրավորական, տհաճ ձևով, ավելի շուտ համառություն ու վրդովմունք կարող է առաջացնել: Սա միշտ պետք է հիշել:

*Թարգմ. Ս. ԱՅՈՒՆՑԻ*

այլ համեղ մրգեր: Իսկ եթե ընկնեք Ֆերգանա և Կոկանդ քաղաքները, ապա կհիշեցնեն՝ մետաքսյա գործվածքներ կամ մետաքսից պատրաստած հուշանվերներ գնեք:

1914 թվականին Ուզբեկստանում գրագետների թիվը շատ քիչ էր, իսկ ներկայումս Ուզբեկստանը դարձել է համատարած գրագիտության երկիր: Ինչպես ամենուրեք Սովետական Միությունում, այստեղ նույնպես մտցված է ընդհանուր պարտադիր միջնակարգ կրթություն: Իրանում (որը բնակչությամբ կրկնակի մեծ է Ուզբեկստանից) կա ընդամենը հինգ բարձրագույն ուսումնական հիմնարկ, Հոլանդիայում, որը բնակչությամբ քիչ ավելի շատ է, քան Ուզբեկստանը, կա վեց բարձրագույն ուսումնական հիմնարկ: Իսկ Ուզբեկստանը ունի մոտ քառասուն բարձրագույն ուսումնական հիմնարկ: Դրանց մեծ մասը գտնվում է Տաշքենդում:

Տաշքենդը միլիոնանոց գեղեցիկ քաղաք է: Իր մեծությամբ նա Միջին Ասիայում առաջինն է:

Մեծ է Տաշքենդի արդյունաբերական նշանակությունը: Այստեղ կան այնպիսի գործարաններ, որոնք միութենական նշանակություն ունեն: Այդպիսիներից են Տաշքենդի տեքստիլ կոմբինատը և մեքենաշինական գործարանները, որոնք գյուղատնտեսական, հատկապես բամբակագործական բարդ մեքենաներ են արտադրում:

Ուզբեկստանի երկրորդ խոշոր և պատմական քաղաքն է Սամարղանդը: Ասում են, ով չի եղել Սամարղանդում, չի կարող ասել, որ եղել է Ուզբեկստանում:

Սամարղանդը Արևելքի փառաբանված քաղաքներից է: Նա բազմապիսի է ու հինավուրց, ով մեկ անգամ եղել է այնտեղ, այլևս չի կարող մոռանալ: Այցելուին նախ գրավում են Սամարղանդի կոթողները, ուզբեկ ժողովրդի վարպետների ձեռքով ստեղծված հուշարձանները, որոնցից առավել աչքի ընկնող է Բիբի խանըմ մզկիթը: Ըստ ավանդության, սա Լենկթեմուրի կնոջ դամբարանն է: Նշանավոր են Շահ Զինդա դամբարանը և Ռեգիստան հրապարակը:

Սամարղանդը Լենկթեմուրի մայրաքաղաք լինելուց բացի, իր ժամանակին դարձավ գիտության օրրաններից մեկը: Այստեղ մեծ զարգացման հասավ հատկապես աստղագիտությունը: Սամարղանդի անվան հետ է կապված ուզբեկ մեծ մաթեմատիկոս և աստղագետ Ուլուգբեկի անունը, որի դամբարանը քաղաքի նշանավոր կոթողներից մեկն է համարվում:

Սամարղանդը այսօր էլ Ուզբեկստանի կյանքում մեծ դեր է խաղում: Նա համալսարանական քաղաք է և արդյունաբերական կենտրոն, բարեկարգ է ու կանաչազարդ: Այստեղ ամեն օր կարելի է հանդիպել բազմաթիվ տուրիստների, որոնք գալիս են դիտելու նրա հոյակապ հուշարձանները:

Ուզբեկական դասական կոթողներ կարելի է տեսնել նաև Բուխարա և Խիվա հինավուրց քաղաքներում:

Ուզբեկստանի տերիտորիայի հյուսիս-արևմտյան մասում ընդարձակ տարածություն է զբաղեցնում Կարա-Կալպակյան ինքնավար հանրապետությունը, որը մտնում է Ուզբեկստանի կազմի մեջ: Ամու-Դարյայի ստորին հոսանքով ձգվում են Կարա-Կալպակիայի նշանավոր օազիսները, որոնք հյուսիսում հարում են Արալյան ծովին: Կարա-Կալպակիայի մայրաքաղաքն է Նուկուսը:

Սովետական տարիներին, երբեմնի կիսագաղութային, ծայրամասային, ցարական Ռուսաստանի Թուրքեստան երկրի մասը կազմող Ուզբեկստանը դարձել է միութենական առաջավոր ինդուստրիայի, մշակույթի և արվեստի հանրապետություն:

Եղբայրական հանրապետությունների միջև գոյություն ունեցող աշխարհագրական աշխատանքի բաժանման գործում, նա դարձել է, պատկերավոր ասած, մեր հայրենիքի «սպիտակ ոսկու»՝ բամբակի հիմնական շտեմարանը:

## ՈՒԶԲԵԿԱԿԱՆ ԱՌԱԾՆԵՐ

Քաղաքավարությունը շուկայից չես գնի:

Եթե ընկերոջիցդ օգնություն չկա, թասակդ դիր գետնին և խորհրդակցիր նրա հետ:

Մի հատիկով ճաշ չես եփի:

Խելոքին ասացին, հասկացավ, հիմարին ասացին, ծիծաղեց:

Թե ուզում ես առողջ լինել՝ քիչ կեր, թե ուզում ես քեզ հարգեն՝ քիչ խոսիր:

ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԻՈՆԵՐԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԷՋԵՐԻՑ



# ՊԱՏԿՈՄԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՊԱՇՏՈՆԱԿԱՆ ՀԻՄՆԱԴՐՈՒՄԸ

*ՄԱՐՈ ԱԼԱՋԱՆ*

Շատ վաղ է մնացել հիշողության մեջ 1921 թվականի հուլիսի 1-ի ցնծալի օրը: Մենք՝ բոլոր պատկոմներս, Անգլիական այգու կենտրոնական մասում շրջան կազմած, երգում ու պարում էինք, իսկ Ստյոպան շրջանի մեջտեղում կանգնած, դիտում էր մեր ուրախ և անհոգ երգն ու պարը: Մեկ էլ, մեր շրջանի կենտրոնում հայտնվեց սոցդասատվարչության պետ Տիգրան Մուշեղյանը, որը Ստյոպայի մտերիմն ու խորհրդատուն էր և հաճախ էր լինում մեր ժողովներին ու հանդեսներին: Նա ձեռքը գցելով Ստյոպայի պարանոցին, սկսեց նրա հետ շրջանի մեջ ետ ու առաջ քայլելով կրուցել: Երկար կրուցեցին նրանք, որից հետո Տիգրան Մուշեղյանը մեկ դառնալով, հանդիսավորությամբ ասաց.

— Բարև՛, սիրելի՛ պատկոմներ:

— Բարև՛,— միաբերան գոչեցինք մենք և ապա բուռն ու երկարատև ծափահարեցինք:

— Սիրելի՛ պատկոմներ, այսօր շատ նշանավոր օր է լինելու ձեզ համար: Այսօր մենք պաշտոնապես հիմնադրելու ենք պատկոմական կազմակերպությունը, այս օրը ձեր կազմակերպության հիմնադրման տոնն է համարվելու:

Նրա խոսքերը ծածկվեցին մեր ուռաներով և բուռն ծափերով:

— Պատկոմական կազմակերպության հիմնադրման հանդիսավոր արարողության համար ձեզ ապահովելու ենք դահլիճով, նվագախմբով և համազգեստով:

Ընկեր Մուշեղյանի խոսքերը կրկին ծածկվեցին մեր ուռաներով և փոթորկալի ծափերով: Ապա լըսվեց Ստյոպայի խրոխտ ձայնը.

— Պատկոմնե՛ր, պատրա՛ստ...

— Մի՛շտ պատրաստ ենք,— պատասխանեցինք մենք պատանեկան կայտառ ու վիլ ձայնով:

1921 թվականի վերջերին մենք ունեինք մեր ակումբը, որը գտնըվում էր նախկին գիմնազիայի շենքում, որտեղ մշտապես գործում էին մեր երեք սեկցիաները՝ թատերական, երաժշտական, նկարչական (դա ներկա հասկացողությամբ մեր պատկոմական պալատըն էր):

Թատերական սեկցիայի անդամներն էին՝ Երվանդ Խալեյան, Հրանտ Մանվելյան, Գրիգոր Մարգարյան, Վիլեմ (Խաչիկ) Հայկազյան և տողերիս գրողը՝ միակ աղջիկը, որը հանդգնել էր այդ ժամանակ բեմ բարձրանալ:

Մեր խաղացանկի մեջ էին մտնում. Շիրվանզադե՝ «Նամուս», Պարոնյան՝ «Մեծապատիվ մուրացկաններ» և «Արևելյան ատամնաբույժը», Ալեքսանդր Աբեղյան՝ «Մարող ճրագները», Էմին Տեր-Գրիգորյան՝ «Խեչոյի թուլը»:

Բեմական հագուստները և գրիմի ներկերը հայթայթում էինք մեր սեփական միջոցներով: Արտաքին ձևավորումն ու դեկորացիաները կատարում էր Հրայր Իսաբեկյանը: Շատ ուշագրավ էր մեր վարագույրը: Նրա վրա նկարված էր մի պատկոմ, ջահը ձեռքին, որը շատ նման էր իրեն՝ Հրայրին: Մեր թատրոնը սպասարկում էր ոչ միայն Երևանի, այլև ամբողջ հանրապետության գյուղական ու քաղաքային պատանի հանդիսատեսներին: Մեր թատրոնը, ըստ իս, պատանի հանդիսատեսի թատրոնի նախահայրն է եղել հանրապետությունում: Եթե պատանի հանդիսատեսի թատրոնի պատմությունը գրվի, ապա նրա ծնունդը պետք է 1921 թվականից՝ պատկոմական մեր թատրոնի կազմավորման օրվանից հաշվվի:

Երաժշտական սեկցիան վարում էինք մենք մեր ներքին ուժերով: Երաժշտասեր հասարակությունը մեզ ընդունում էր ջերմորեն: Իսկ հետո ունեցանք մասնագետ ղեկավար՝ հանձին երաժշտագետ մանկավարժ Վահան Ումրշատյանի: Նա շատ լավ հիմքերի վրա դրեց մեր քառաձայն խումբը: Կազմակերպեց ու ցուցադրեց մի քանի օպերետներ՝ «Ուլիկը», «Չարի վերջը», որոնք չտեսնված ջերմությամբ ընդունվեցին պատանի հանդիսատեսների կողմից:

Հայաստանի օպերետային թատրոնը նույնպես, ես կարծում եմ, իր ծնունդը պետք է հաշվի 1921 թվից:

Նկարչական սեկցիան ղեկավարում էր Հրայր Իսաբեկյանը: Այդ սեկցիայի աշխատանքներին մասնակցում էին պատկոմական կազմակերպության մեջ եղած բոլոր այն պատանիները, որոնք նկարչական շնորհք էին ցուցաբերում:

Ահա այդպիսին էր այն ժամանակվա պատկոմ գործիչը՝ դերասան, երգիչ, գրող, կոմպոզիտոր, մարզիկ, մանկավարժ: Մի խոսքով, պատկոմական մեր ակումբը փոխարինում էր մեր ներկա պիոներպալատին, իսկ հրահանգիչները՝ նրա ուսուցիչ մասնագետներին և մանկավարժներին:

---

Սկիզբը՝ «Պիոներ» № 9, 10



# ԺԱՄԱՑՈՒՅՑԻ «ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ»

*ՄԻՀՐԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

Այժմ դժվար է պատկերացնել, թե ինչպես կարելի էր յոլա գնալ՝ չունենալով մեզ համար այնքան սովորական դարձած ժամացույցը: Սակայն դարեր առաջ, երբ գիտությունն ու մշակույթը գտնվում էին զարգացման ցածր աստիճանի վրա, մարդիկ ժամանակը որոշելու կարիք չէին զգում: Առօրյա փորձից նրանք գիտեին, որ ցերեկին հաջորդում է գիշերը, որ սովածություն զգալու պահը ճաշի ժամանակն է... Միայն հետագայում, մարդկային կուլտուրայի զարգացման շնորհիվ, առաջ քաշվեց ժամանակի հուսալի չափիչ ստեղծելու պահանջ:

Ներկայիս ժամացույցները, իհարկե, միանգամից չեն ստեղծվել: Երկար դարերի պատմություն ունեն դրանք: Սրանից 2500 տարի առաջ հին բաբելոնացիները հնարեցին ժամանակ ցույց տվող մի հատուկ սարքավորում: Դա արևի ժամացույցն էր: Հավասար մասերի բաժանված շրջանաձև թվատախտակի կենտրոնում նրանք ամրացրին քարե ձող, որից թվատախտակի վրա ընկնող ստվերի օգնությամբ որոշվում էր ժամանակը: Նման ժամացույցներ կարելի է տեսնել մեր հանրապետության տարբեր վայրերում գտնվող հնագույն տաճարների ու եկեղեցիների պատերին:

Հռոմեական կայսր Օկտավիանոս Օգոստոսը Նեղոսի ափերից հատուկ նավով Հռոմ տարավ 34 մետր բարձրությամբ գորշագույն գրանիտե մի սյուն: Քաղաքի գլխավոր հրապարակում՝ Մարսյան դաշտում դրված այդ կոթողի ստվերը արդեն բազմաթիվ դարեր ցույց է տալիս ժամանակը:

Եգիպտոսում, Բաբելոնում, Հունաստանում և այլ երկրներում մ.թ.ա. 3-րդ դարում արևի ժամացույցներին փոխարինելու եկան ջրի ժամացույցները: Դրանց առավելությունն այն էր, որ ժամանակը ցույց էին տալիս, ինչպես ցերեկը՝ արևոտ ժամանակ, այնպես էլ գիշերը: Այդ ժամացույցով ժամանակը որոշվում էր անոթի մեջ գտնվող ջրի մակարդակով: Եվ քանի որ անոթի փոքր անցքերից ջուրն աստիճանաբար թափվում էր, հին հույները այն անվանեցին «կլեպսիդրա» (հայերեն՝ «ջրագող»):

Միջին դարերում մարդիկ ժամացույցներ հնարեցին բկերը իրար միացրած երկու անոթներից և այդ անոթների մեջ լցրին ավազահատիկներ: Նման ժամացույցներ կարելի է տեսնել ամեն մի լաբորատորիայում: Դրանք կիրառվում են ժամանակի կարճ հատվածներ չափելու համար:

Մեխանիկական ժամացույցների առաջին նմուշները երևան եկան մեր թվագրության 13-րդ դարում: Հսկայական լիսեռին փաթաթվում էր երկար պարան, որի մի ծայրից կախվում էր կշռաքար: Վերջինիս ծանրությունից լիսեռը հավասարաչափ արագությամբ պտտվում էր, իսկ պարանը՝ քանդվում: Պարանի վրա նախօրոք կատարած նշումներից մարդիկ իմանում էին, թե որքան ժամանակ է, ինչ այն քանդվում է: Ավելի ուշ կշռաքարը փոխարինվեց զսպանակով:

Ժամանակակից ժամացույցի նախատիպը ստեղծել է հոլանդացի մեխանիկ Քրիստիան Հյուգենսը, 1656 թվականին: Դրա մեխանիզմը հենվում էր ճոճանակի հավասարաչափ տատանումների սկզբունքի վրա:

Ժամացույցի գյուտից հետո նրա արտադրությունը Ֆրանսիայում, Շվեյցարիայում, Գերմանիայում և Անգլիայում արագորեն զարգացավ: Ցարական Ռուսաստանը, սակայն, երկար ժամանակ անտարբեր էր մարդկության մտքի այդ հրաշալի հաղթանակի նկատմամբ և ժամացույցներ ներմուծում էր արտասահմանից: Միայն անցյալ դարի 2-րդ կեսին՝ ժամացույցի գյուտից 200 տարի անց, Մոսկվայի նահանգի Զվենիգորոդ գավառի Շարապովո գյուղում ստեղծվեց ծանրակավոր ժամացույցների մի փոքրիկ ֆաբրիկա: Այնուհետև, ներկա դարի սկզբներին Մոսկվայում, Պետերբուրգում, Օդեսայում և այլ քաղաքներում բացվեցին ժամացույցների հավաքման արհեստանոցներ: Շվեյցարիայից ու Գերմանիայից բերված մասերով ռուս վարպետները հավաքում էին ժամացույցներ, որոնց թվատախտակի վրա կարելի էր կարդալ՝ «Պավել Բուրե», «Հերիխ Մոզեր», «Օմեգա»: Մեր երկրում ժամացույցի առաջին գործարանը հիմնադրվել է 1930 թ.:

Սովետական Միության ժամացույցների գործարանները այժմ թողարկում են ժամացույցի հայտնի բոլոր տեսակները՝ պատի, զարթուցիչ, գրպանի,

ձեռքի, ցնցումների ու ջրի նկատմամբ անտարբեր, ավտոմատ լարվող, ամսաթվերը ցույց տվող, երաժըշտական, ազդանշանային և այլն: Դրանք արտահանվում են նաև աշխարհի բազմաթիվ զարգացած երկրներ:

Երևանի ժամացույցի գործարանը հիմնադրվեց 1943 թ. պատերազմական դժվարին օրերին:

Այժմ երևանյան ժամացույցները սպառվում են, ինչպես մեր Միության մեջ, այնպես էլ արտասահմանյան 50 երկրներում՝ ամենուրեք արժանանալով բարձր գնահատականի: Ահա, օրինակ, անգլիացի Մայկլու Ռայտի Լոնդոնից ուղարկած կարծիքը՝ «Ձեր ժամացույցները լավագույններն են, որ ես տեսել եմ երբևիցե»: Միջազգային տոնավաճառներում երևանյան ժամացույցները դրվում են ֆրանսիական, գերմանական, անգլիական աշխարհահռչակ ֆիրմաների ցուցանմուշների կողքին և երբեք չեն զիջում նրանց: Հայ ժամագործների ձեռքի արտադրանքը «Արտադրված է ՍՍՀՄ-ում» մակնիշով հասնում է նույնիսկ Շվեյցարիա՝ ժամացույցների արտադրության հանրաճանաչ հայրենիքը:

Չնայած մեծ նվաճումներին, ժամացույցների կատարելագործումը շարունակվում է: Վերջին տարիներին Մոսկվայի ժամացույցի 2-րդ գործարանը սկսեց թողարկել ձեռքի էլեկտրոնային ժամացույցներ: Ականջին դնելով, դրանցից ոչ մի «տիկ-տակ» չի լսվում: Պատյանի ներսում մեխանիզմի փոխարեն դրված են էլեկտրոնային մանր մասեր, բազմագույն նուրբ լարեր, փոքրիկ կամերտոն, 1,3 վոլտ լարվածության մարտկոց: Այդ ժամացույցը չի վախենում շոգից, ցրտից ու մագնիսական դաշտից: Ռադիոֆիզիկոսները ներկայումս աշխատում են մոլեկուլային ժամացույցի կատարելագործման վրա: Հաշվումները ցույց են տվել, որ այդպիսի ժամացույցները հազար տարում կտան ընդամենը մեկ վայրկյանի տարբերություն:






## ԹՂԹԵ ՏՆԵՐ

*Անգլիական «Յունիվերսալ Դեյպերտիկ» ֆիրման կառուցում է թղթե տներ, որոնք օգտագործման համար պիտանի են 20 տարի:*

*Շինարարական հիմնական նյութերն են՝ 0,3 սմ հաստությամբ ստվարաթղթե պանելները, որոնք բավականին ամուր են՝ եկրերի թեքության պատճառով: Մասերն իրար և դռների ու պատուհանների շրջանակ-*



*ներին են միացվում մետաղե կեռիկներով: Կառուցումից հետո տունը ներկում են հրադիմացկուն ներկով:*

*Տան համալիրը տեղավորվում է երկու փոքրիկ ճամպրուկների մեջ: Սանիտարական, ջրմուղի և ջեռուցման սարքավորումները առանձին հավաքածու են կազմում, որը նախատեսնվում է երկու տան համար:*

## «ԽԵԼԱՑԻ» ԱԿՆՈՑՆԵՐ

Անգլիայում սկսել են թողարկել արևապաշտպան ակնոցների համար ֆոտոխրոմատիկ ապակիներ, որոնք արտակարգ կզգայուն են արևի ճառագայթների նկատմամբ. բավական է մի վայրկյան, որպեսզի նրանք մուգ գույն ստանան: Իսկ երբ արևը թաքնվում է ամպերի հետև՝ ապակիները դառնում են թափանցիկ:





## ՀՐԱՇՔ ՕՐՈՐՈՑԸ

Մի հնդիկ ինժեներ պատրաստել է յուրօրինակ կառուցվածքով մանկական օրորոց։ Երբ երեխան լալիս է, օրորոցն սկսում է ինքն իրեն շարժվել և օրորոցային երգ նվագել։

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ



ՀԱՆԳՍՏԻ ԺԱՄԻՆ

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

ԱՍՏՂԻԿ ԹԵՎԱՆՅԱՆ

Այն ի՞նչն է, այն ի՞նչը.
Գարնանը լալիս,
Աշնանը քաղցր
Պտուղ է տալիս։

(Խաղողի վազը)

Այն ի՞նչ դուռ է, որ
Քո դեմ լայն բացվում,
Մտնում ես մանուկ,
Ելնում իմաստուն։

(Դպրոցը)

Ո՞վ է ողջ կյանքում
Ծամում, հա ծամում,
Բայց կուլ տալ երբեք
Չի կարողանում։

(Մկրատը)

Այն ի՞նչն է, որ ինքը
Մաքրություն է սիրում,
Բայց անմաքուր կեղտանոտ
Անունն է կրում։

(Խողանակը)

## ԲԱՌԱՇՂԹԱ-ԳԱՂՏՆԱԳԻՐ

1. 18-րդ դարի ազատագրական շարժման գործիչ (անուն-ազգանուն)։
2. Միջնադարյան բանաստեղծ և նկարիչ։
3. Երևանի շրջակայքում գտնվող էնեոլիթյան բնակավայր։
4. Գյուղ՝ պատմական Հայաստանում, որտեղից սկիզբ է առել գյուղացիական հզոր շարժում։
5. Հռչակավոր երգահան։
6. Արամ Խաչատրյանի բալետը։
7. Ժողովրդական երգ։
8. Մուրացանի վիպակը։
9. Կոնյակի տեսակ։
10. Նշանավոր փիլիսոփա։
11. Սովետական Հայաստանին սահմանակից երկիր։
12. «Մատյան ողբերգության» պոեմի հեղինակը։
13. Քաղաք։
14. Տաղանդավոր արձակագիր։
15. Ե. Չարենցի պոեմը։
16. Հեթանոսական աստված։
17. Հակոբ Հակոբյանի ծննդավայրը։
18. Հին թաղամաս՝ Երևանում։
19. Պարսիկ թագավոր, որի արձանագրությունը հայերի և Հայաստանի մասին մինչև այժմ ամենահինն է համարվում։

Բառաշղթան ճիշտ լուծելուց և գաղտնագրի թվերը բառաշղթայի տառերով փոխարինելուց հետո՝ դուք կկարդաք ամերիկացի հայտնի նկարչի խոսքերը Սովետական Հայաստանի մասին և կիմանաք նրա անուն-ազգանունը։

Համարիչը ցույց է տալիս բառաշղթայի հերթական համարը, իսկ հայտարարը՝ համապատասխան տառը։

Կազմեց ԼԵՎՈՆ ՂԱԶԱՆՋՅԱՆԸ





# ԱՇԽԱՐՀԻ ԱՄԵՆԱԵՐԻՏԱՍԱՐԴ ԳՐՈՍՄԱՅՍՏԵՐԸ

*Ռաֆայել Վահանյանը 20 տարեկան է, և նրա անունը արդեն հայտնի է ոչ միայն մեր երկրում, այլև աշխարհում: Համեստ ու խելացի այս տղան դեռ դպրոցում սովորելիս, 14 տարեկանում դարձել է Հայաստանի պատանիների չեմպիոն, դպրոցականների համամիութենական առաջնությունում երկու անգամ կիսել առաջին-երկրորդ տեղերը: Տասնվեց տարեկանում նվաճել է Հոլանդիայում անցկացվող ավանդական մրցաշարի գավաթը:*

*1970 թվին Ռաֆայել Վահանյանը հաղթեց ՍՍՀՄ կինված ուժերի առաջնությունում, ինչպես նաև Սովետական Միության չեմպիոն դարձավ ուսանողների շրջանում: Նա հաղթող է հանդիսացել կամ մրցանակային տեղեր գրավել մեծ ու փոքր մի շարք այլ մրցություններում:*

*Այս տարի հարավսլավական Վրնյաչկա-Բանյա քաղաքում կայացած խոշոր մրցաշարում հիանալի արդյունքով առաջին տեղը գրավելու համար՝ Ռաֆայել Վահանյանը պետք է ստանար միջազգային վարպետի կոչում: Սակայն Շախմատի միջազգային ֆեդերացիան, որպես բացառություն, նրան գրոսմայստերի կոչում շնորհեց:*

*Ամսագրի ընթերցողների կողմից շնորհավորում ենք հայ երկրորդ գրոսմայստերին և ցանկանում նորանոր հաջողություններ:*

Լույս է տեսնում 1923 թվականից



ՊԻՈՆԵՐ

№ 11 նոյեմբեր 1971 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*լուսանկար ԶԱՎԵՆ ԲԵՏԻԿՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: Ереван-200, ул. Кармир банаки, № 15, почт. инд. 375200.

*Հասցեն՝ Երևան—200, Կարմիր բանակի փողոց, № 15, փոստային ինդեքս՝ 375200։*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 05450: Պատվեր 1145: Տպաքանակ՝ 68500: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 17/X 1971 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

